

60



# Հայաստանի աշուն

ՍԱՐԳԻՍ ԽԱՐԱԶՅԱՆ

Հավատի երգ որպես
Ձայնդ է իմ մեջ խշշում,
Ուրիշ հմայք ունես,
Հայաստանի աշուն:
Հոկտեմբերով քո մեծ՝
Լույսով արեգակի,
Իմ երկիրը փրկվեց,
Զահելացավ կրկին:

Ծաղկեց հույսը բարակ
Ճամփին ձմռան ու ձյան,
Խոպան ու ավերակ
Այգեստաններ դարձան:
Հիմա բերքով առատ
Այգիներդ են խշշում,
Դու դարերի ճամփորդ,
Հայաստանի՛ աշուն:



# 1920









«Արևելքում մեռնում է մեր քույրը, մեռնում է միայն նրա համար... որ մեզ նման ընկալել է իմաստություն, բանաստեղծություն և արվեստ»: Կրսկիծով ասված այս խոսքերը պատկանում են ֆրանսիացի մեծ գրող ու մեծ մարդասեր Անատոլ Ֆրանսին և արտասանվել են 1916 թվականին Փարիզի Սորբոնի համալսարանում՝ հայոց կոտորածների դեմ կազմակերպված բողոքի միտինգի ամբիոնից:

Այդ օրհասական տարիներին հայ ժողովրդի ճակատագրով մտահոգված էին աշխարհի բոլոր առաջադեմ մարդիկ: Սակայն մեզ փրկություն բերողը նրանց անկեղծ կարեկցանքը չէր:

Հայ ժողովրդին օգնության իր հզոր ձեռքը մեկնեց ռուս մեծ ժողովուրդը: Հայ ժողովուրդն իր փրկությունը գտավ Հոկտեմբերյան հեղափոխության շնորհիվ, որի ազատարար լույսը 1920 թվականի նոյեմբերի 29-ին Հայաստան հասավ:

Իրականացավ նույն Անատոլ Ֆրանսի մարգարեությունը. «Հայաստանը մեռնում է, բայց նա կվերածնվի: Շատ քիչ բան է մնացել նրան, բայց դա այն թանկագին արյունն է, որից

# 1980




կճնվի մի հերոսական սերունդ»:

Ծնվեց այդ հերոսական սերունդը, մեծագործությունների սերունդը, որի քրտնաջան աշխատանքով վերածնվեց, ոտքի կանգնեց ու բարգավաճեց Հայաստանը, դարձավ մեծ ու հզոր Սովետական Միության ծաղկուն հանրապետություններից մեկը, դարձավ արվեստների, մշակույթի, գիտության երկիր, ուր այցելության եկած օտարերկրացի մեծանուն հյուրերից ամեն մեկը իր հիացմունքը հայտնելու համար բառեր չի խնայում:

Այսպիսին է այսօրվա Հայաստանը:

Դո՛ւք՝ նրա պատանի՛ քաղաքացիներ, արժանի՛ եղեք նրան, մեր մեծ նախնիների ու հայրերի հայրենասիրության կրակը ձեր սրտերի միջով է գնալու դեպի հավիտենություն:

Մեր հայրենիքի վաղվա օրը այսօրվանից ավելի գեղեցիկ է լինելու: Եվ այդ անելու եք դուք:

Պատրաստվեցեք դրան, եղեք ավելի ջանասեր ուսման մեջ, ավելի բարեխիղճ, ավելի պարտաճանաչ:

Ձեր անվան հետ են կապվելու Հայաստան աշխարհի վաղվա մեծագործությունները:

Նկ. ՅՈՒԼԻԱ ԳԱՆԴԻԼՅԱՆԻ

# ԱԶԱՏԱՐԱՐ 11-ՐԴ ԲԱՆԱԿԸ ՀԱՅԱՍՏԱՆ ՄՏԱՎ ԻՋԵՎԱՆԻ ԼԵՌՆԵՐՈՎ



Իջևանն այսօր



Այս ապարատով 1920 թվականի նոյեմբերի 29-ին Սարգիս Կասյանը Վ. Ի. Լենինին հեռագրել է Հայաստանում սովետական կարգերի հաստատման լուրը:



Պիոներ-դպրոցականների աշխատանքային ամառը

Իջևանի բնությունը մեղմ է ու գրավիչ: Նրա բարձրադիր լեռների լանջերին, որտեղ բուսածածկույթը սովորաբար շատ բարակ շերտ է կազմում, և անգամ լեռնագագաթներին, որոնք հաճախ մերկ ժայռեր են, ծառերն համարձակ արմատներ են ձգում ապարների մեջ, ծլարձակում ու հասակ առնում:

Հանրապետության ամենաանտառաշատ շրջանն է Իջևանը:

Նա ճանաչված շատ մեծ ստեղծագործողներ չի տվել, դրա փոխարեն տվել է ճանաչված շատ հեղափոխականներ՝ Մայիսյան ապստամբության հերոսներ Ամիրխանյան, Մկրտումյան, Յաղուբյան, Շամախյան: Առաջին ընդհատակյա կազմակերպությունները ստեղծվել են Քրդևան (այժմ՝ Ենոքավան) և Սևքար գյուղերում:

Մայիսյան ապստամբությունը խեղդվեց արյան մեջ, բայց նրա շատ մասնակիցներ կարողացան անցնել Սովետական Ադրբեջան, այնտեղ կազմվեց Հայաստանի հատուկ հանձնարարական խումբը, որը և ապահովեց Կարմիր բանակի մուտքը Հայաստան՝ Իջևանի վրայով: Հենց այստեղ՝ Ներկայիս շրջկենտրոնում էլ Հեղկոմի

ՌՈԲԵՐՏ ՍՈՒԽՈՒԴՅԱՆ
ՀԿԿ Իջևանի շրջկոմի առաջին քարտուղար

# ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆՆԵՐԻ ՕՐՐԱՆԸ



Ռ. Սուխուդյանը զեկույց է ընդունում պիոներներից

նախագահ Սարգիս Կասյանը Հայաստանը հռչակել է խորհրդային, հրապարակել առաջին դեկրետը և հեռագրով հաղորդել այդ մասին համաշխարհային հեղափոխության առաջնորդ Վ. Ի. Լենինին:

Իջևանում ետպատերազմյան տարիներին բուռն կերպով ծավալվեցին արդյունաբերական, շինարարական ու նոր հողերի յուրացման աշխատանքներ:

Շրջանի գյուղատնտեսության աճին մեծապես նպաստեց ջրամբարների կառուցումը, որոնց մեջ տարեկան մոտ 50 միլիոն խորանարդ մետր ջուր է ամբարվում:

Առաջին անգամ Իջևանում կիրառվեց թեք սարալանջերին խաղողի այգիների հիմնումը: Շրջանում այժմ տարեկան արտադրվում է 5—6 հազար տոննա խաղող, 1700—1800 տոննա ծխախոտ, տնկվել է 1400 հեկտար պտղատու այգի:

11-րդ հնգամյակում կհիմնվեն նոր այգիներ, բանջարանոցներ, կմեծանա շրջանի խոշոր ձեռնարկությունների՝ գորգագործարանի, բենտոնիտի, փայտամշակման կոմբինատի և մյուս քսանմեկ ձեռնարկությունների արտադրանքի ծավալը:

Նշենք, որ հատկապես գյուղատնտեսության ասպարեզում մեծ է պիոներ-դպրոցականների դերը: Շրջանի բոլոր խոտհարքները, բանջարանոցները ու անգամ այգիները հիմնականում թեքությունների՝ կտրտված փոքրիկ հողակտորների վրա են: Հաճախ գյուղատնտեսական մեքենաները ու սարքավորումները մի դաշտից մյուսը տեղափոխելու վրա ավելի շատ ժամանակ ու աշխատուժ է պահանջվում, քան բուն հողակտորը մշակելու: Կան հողակտորներ էլ, որտեղ ընդհանուր առմամբ տեխնիկա չի կարող մտնել: Ահա այսպիսի պայմաններում աշակերտության օգնությունը անգնահատելի է: Ամեն տարի նրանք աշխատանքային՝ 5-րդ քառորդը փակում են գերազանց, տալով մոտ մեկ միլիոն ռուբլու արտադրանք:

# ԵՆՈՔ ՄԿՐՏՈՒՄ-ՅԱՆ



Նա գավառի մեծահարուստի տղան էր, բայց պատանեկան տարիներից իրեն նվիրեց ազատության գաղափարներին, աշխատավորներին շահերի պաշտպանությանը: Հանգիստ ու ապահով կյանքը նրան չէր հրապուրում: Ավելին, նա չէր պատկերացնում, որ կարելի է երջանիկ լինել, երբ կողքիդ ուրիշները երջանիկ չեն: Իր ազնիվ հոգու աչքերով էր նա նայում աշխարհին և երազում մի գալիք, որտեղ չկա հարուստ ու աղքատ, տեր ու ծառա, որտեղ մարդկային հարաբերությունները հիմնված են հավասարության, փոխադարձ հարգանքի ու սիրո վրա: Դեռևս Էջմիածնի ճեմարանում ուսանելիս Ենոք Մկրտումյանը հոդվածներ էր գրում ընդդեմ ցարիզմի, ի պաշտպանություն գյուղացիության, և տպագրում Թիֆլիսում լույս տեսնող «Պայքար» թերթում:

Ճեմարանն ավարտելուց հետո նա ուսուցչություն է անում իր հայրենի գավառում: Երիտասարդ ուսուցիչը չէր բավարարվում աշակերտներին միայն գիտելիքներ տալով, նրանց հաղորդակից էր դարձնում իր նվիրական երազանքներին, նրանց հոգիներում սերմանում էր հեղափոխական գաղափարներ ու ազատասիրական ձգտումներ:

Օրեցօր ստվարանում էին ազատության համար պայքարողների շարքերը: 1920 թ. մայիսին գավառի բոլշևիկների քսան պատգամավորներ Ենոքենց տանը քննարկում են մայիսյան ցույցերի հարցերը: Ցույցն անցնում է կազմակերպված: Ցույցից անմիջապես հետո Ենոքին ձերբակալում են: Բայց նրան հաջողվում է փախչել բանտից:

Հեղկոմի գլխավորությամբ Իջևանի գյուղացիությունը ապստամբության դրոշ է բարձրացնում: Ապստամբներին են միանում Սևքարում գտնվող 6-րդ գնդի 2-րդ վաշտի զինվորները, և մայիսի 19-ին ապստամբների ձեռագործ դրոշը հպարտորեն ծածանվում է նաև Իջևանում, ապա Դիլիջանում:

Թշնամին վերադասավորելով ուժերը, անցնում է հակահարձակման: Չորս տեղից վիրավորված Ենոք Մկըրտումյանը գերի է ընկնում: Դաշնակցական պարագլուխները 11 օր շարունակ խոշտանգում են նրան, բայց չեն կարողանում ընկճել:

Հիմա նրա տուն-թանգարանում պահպանվում են սիրած աղջկան բանտից գրած նամակները. «Ես րոպե առ րոպե սպասում եմ գնդակահարության: Իմ աչքերի առջև հոսում են իմ անցած կյանքն ու վերջին տարիները, բայց մինչև այժմ ես ոչ մի վայրկյան զղջում կամ սարսափ մտքովս չեմ անցկացրել. միանգամայն հանգիստ եմ և հանգիստ հոգով էլ սպասում եմ իմ դատավճռին»:

Մի քանի անգամ ընկերները փորձում են բանտից փախցնել նրան, չի հաջողվում: Հայրն է փորձում ոսկով ազատել որդուն, սակայն դաշնակցական կառավարությունը գիտեր, թե ով է իր ճանկերում:

Երբ հորը, ի վերջո, հաջողվում է գնդակահարության դատավճիռը փոխել 101 տարվա բանտարկությամբ, Ենոքը չի հավատում այդ որոշմանը: Ահա թե իր վերջին նամակում ինչ է գրում նա. «Ես ապրել եմ 24 տարի, կարող էի այդքան էլ ապրել, բայց այն ժամանակ էլ իմ կյանքը կտայի իմ ժողովրդին...»

Զգուշանալով ժողովրդյան հուզումներից, Ենոք Մկրտումյանին գնդակահարում են մութ գիշերով: Մահից տասն օր անց հայրը մեծ գումարով գնում է որդու դին և տեղափոխում հայրենի գյուղ, որտեղ և մեծ շուքով հողին են հանձնում քսանչորսամյա հեղափոխականին:

Ենոք Մկրտումյանի անունով այժմ նրա հայրենի գյուղը կոչվում է Ենոքավան. տունը վերածվել է թանգարանի, կիսանդրին դրված է ՀԿԿ Իջևանի շրջկոմի շենքի առջև, նրա անվան դրուժինա և ջոկատներ կան հանրապետության դպրոցներում և պիոներական ճամբարներում:

*ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*



Աղստև գետի վրա կառուցված այս կամուրջին տրված է Մաչիսյան անունը՝ ի պատիվ Մաչիսյան ապստամբության:



«Էրեբունի» գորգը շահել է Լայպցիգի տոնավաճառի մեծ մրցանակը։

# ՓԱՌԱԲԱՆՎԱԾ ՀԱՅԿԱԿԱՆ

Հայկական և արաբական միջնադարյան աղբյուրների վկայությամբ, Հայաստանը անհիշելի ժամանակներից աչքի է ընկել բարձրարժեք գորգերով։ 18-րդ դարում, վենետիկցի ճանապարհորդ Մարկո Պոլոն, որն անցել է հայկական Կիլիկիայով, հիշատակում է, որ Սեբաստիա, Կոնիա և Կեսարիա քաղաքներում հայերը և հույները գործում էին աշխարհի ամենալավ գորգերը։ Հայկական գորգերը աչքի են ընկնում ներկերի, թելերի և գործվածքի որակով, վառ գույների համադրությամբ և զարդանկարների հարստությամբ։ Հատկապես տարածված էին վիշապագորգերը, ծաղկագորգերն ու երկրաչափական զարդանկարներով գորգերը։ Զարդանկարները շատ նմանություններ ունեն մեր մանրանկարչության զարդանկարների հետ։

Գորգագործության հինավուրց ավանդները առ այսօր պահպան-



Իջևանի շրջանի 10 հողագործներ արժանացել են սոցիալիստական աշխատանքի հերոսի բարձր կոչման, որոնցից 9-ը այս՝ Սարի գյուղից:

# ԳՈՐԳԵՐԸ

վում են Սովետական Հայաստանում, ուր գորգագործությունը մեծ զարգացում ապրեց ընկրսած 1964 թվականից, երբ հիմնադրվեց Իջևանի գորգագործական խոշոր կոմբինատը: Այն ամենամեծն է Անդրկովկասում, երրորդը՝ ՍՍՀՄ-ում:

Կոմբինատը տարեկան արտադրում է մոտ մեկ միլիոն քառ.մետր գորգ: Արտադրվող 60 անուն գորգերի նկարների 65 տոկոսը արժանացել է որակի նշանի: Իջևանյան գորգերը համաշխարհային ճանաչում ունեն: Կրում են Էրեբունի, Գուգարք, Իջևան, Գայանե, Անահիտ և այլ հայկական անուններ: Իջևանի գորգերը ցուցադրվել են Մոնրեալի, Սան Պաուլոյի, Բեյրութի, Բուլղարիայի, Պրագայի, Լայպցիգի միջազգային ցուցահանդեսներում և ՍՍՀՄ ժող. տնտեսության նվաճումների ցուցահանդեսում:

Ականատեսները պատմում են, որ մեռնող մարդու պես, ամբողջ երկու-երեք օր ծառը հոգեվարք էր ապրում, մահվան դողը մտած երերում էր, տըն-քում, հառաչում:

Ավանդությունն ասում է, որ այդ կաղնին, Ավարայրի ճակատամարտից մեկ տարի առաջ՝ 450 թվին տնկել է հայոց պատմության սրբագործված հերոս՝ սպարապետ Վարդան Մամի-կոնյանը: Հերթական ճակատամար-տում հաղթանակ տարած, իր այրու-ձիով տուն վերադառնալիս, ճանա-պարհին, այստեղ, այս զանգակ աղբ-յուրի մոտ երբ հացի է նստում, ափսո-սանք է հայտնում, որ աղբյուրի գըլ-խին հովանի մի ծառ չկա: Եվ ինքը, ճամփան շարունակելուց առաջ, իր իսկ ձեռքով տնկում է այս ծառը, հիշատակ թողնելով իրենից հետո նույն աղբյուրի մոտ հացի նստող ճամփորդներին... Ծառն արմատակալում է, հասակ արձակում և ավելի քան հազար հինգ հարյուր տարի խշշում է ճյուղատա-րած, բունը՝ հաստաբեստ, կատարը՝ ամպերի մեջ, և կրում է Վարդանի Ծառ անունն ու հռչակվում սրբազան: Գալիս էին նրա առջև ծնրադրում, ինչպես վանքերում, տաճարներում, մատուռներում, մոմ էին վառում, աղո-թում, հիվանդ, խեղճ ու կարոտյալ, անօգնական մարդիկ:

Իսկ մեր օրերում այն դարձել էր ճան Հայաստան աշխարհի տեսարժան վայրերից: Ովքեր ուղեկցել են Վար-դանի Ծառին այցի եկող մեր հանրապետության այլազգի հյուրերի, ականատես են եղել, թե հյուրերն ինչ-պես են ծառին մոտենալիս ակնածան-քով հանել գլխարկները, զարմանքից, հիացմունքից քարացած անշարժացել այդ հսկայի առջև, հրճվելով, որ տեսնում են երկրի գլխով անցած հա-զար հինգ հարյուր տարվա ինչ-ինչ անցուդարձերի միակ կենդանի վկա-յին: Քանի՜ հազար կայծակ է հար-վածել նրան ու անէացել, հողմեր են արշավել նրա վրա, կարկուտն է ծե-ծել նրան ու տեղատարափ անձրևներն են լողացրել նրան...

Նա գուցե մի հազարամյակ ևս մնար կանգնած իրեն սնող այդ հորդա-բուխ աղբյուրի գլխին, իր հզոր ար-մատներով նրա ակունքը գրկած, բա-բախող սրտի պես պահելով այն իր կրծքի տակ, եթե արմատախիլ արված լիներ մեր ժողովրդի ինչ-ինչ խավերի մեջ ապրող սնոտիապաշտությունը:

Երբ ես առաջին անգամ գնացի Ակնաղբյուր գյուղը և տեսա Վարդանի Ծառը, նա արդեն երկու անգամ հրդեհի էր մատնվել: Նրա փչակը, որի մեջ մի քանի տասնյակ մարդ կարող էր անձ-րևից պաշտպանվել, սնոտիապաշտ-ները վերածել էին մատուռի: Բերում, փչակի մեջ մորթում էին մատաղացու ոչխար, մատաղ արված աքաղաղների գլուխներ էին թափված հատակին, «հավատացյալները» զգեստի ծվեն-ներ էին թողել այնտեղ, որ իբրև թե այդ ծվենների հետ սրբազան ծառին հանձնած լինեն իրենց հիվանդություն-ները, մոմեր էին վառվում փչակի մեջ... Այդ մոմերի բոցերից էլ բռնկվել էր ծառը: Առաջին անգամ հրդեհը շատ չէր ծավալվել, բայց հավանաբար նա-խապայման էր հանդիսացել՝ չորացրել ծառն այնքան, որ երբ տարիներ հետո բռնկվել էր երկրորդ հրդեհը, ամբողջ հինգ օր բազմաթիվ հրդեհաշեջներ չէին կարողանում մարել: Ականա-տեսների պատմելով, ծառաբնի ներսը լափելով, բոցն ու կրակը բարձրացել, դուրս էին ելնում ծառի կատարից, լի-զում երկինքը:

Հրդեհը վերջապես հաջողվում է մարել, և դրանից հետո, բունը ներսից այդպես վառված-փչված, Վարդանի Ծառը տարիներ ի վեր դեռ մնում էր կանգնած, լայնորեն տարածած ճյու-ղերն առաջվա պես կանաչ, կատարը մխրճած երկնքի կապույտի մեջ:

Տրագրվում էր մետաղական պաշտպանական գոտի հագցնել նրան, փչակի ներսից էլ ամրացնել բետոնով-երկաթբետոնով, որով գուցե կարելի լիներ երկարացնել նրա կյանքը ևս մեկ-երկու դար:

Բայց նա տոկալու էլ ուժ չուներ:

Չկարողացավ սպասել օգնության...

Եվ ահա ամբողջ երկու-երեք օր, մեռնող մարդու պես նա հոգեվարք էր ապրում, մահվան դողը մտած, երերում էր, տնքում, հառաչում:

Ողջ գյուղը՝ մեծ ու փոքր, հավաքվել էր նրա շուրջը, կսկիծով հետևում էր իր մեծ նահապետի ջղաձգումներին, որի շուքի տակ էր անցել իրենց պապուպապերի, իրենց ծնողների և իրենցից յուրաքանչյուրի քաղցր մանկությունը:

Այսուհետև նոր ծնվածների գլխավերևը չէր խշշալու Վարդանի Ծառը, որ տապալվեց դանդաղ, օրը ցերեկով, իր շուրջն համախմբված ողջ գյուղի աչքի առջև... տնքալով, հառաչելով, մեկնվեց երկար, հպարտ գլուխն իջեցնելով դրեց գետնին, շուրջը վխտացող մարդկանցից ոչ մեկին, մեծի ու փոքրի մի քերծվածքն ինչ է չհասցնելով:

Վշտացավ գյուղը, ինչպես վշտանում է իր ավագին կորցրած ընտանիքը: Եվ ավագին կորցրած ընտանիքի պես էլ գտավ կորուստի հատուցումն ու մխիթարվեց. մեծ ու փոքր մտած ճյուղերի մեջ, ճյուղերի տակ, փնտրեցին ծառի սերմերն ու հավաքեցին՝ տարան ամեն մեկն իր դռան առջև, իր այգում տնկելու:

— Այդ սերմերից մեկն էլ ինձ բաժին հասավ,— ասաց Իջևանի կուսշրջկոմի քարտուղար ընկ. Սարիբեկյանը,—սերմը տարա տուն, տնկեցի կավե ծաղկամանի մեջ, ընտանիքով խնամեցինք, ծլարձակեց: Երբ բավական բարձրացավ, հանեցինք ծաղկամանից ու տնկեցինք դռան առջև: Այնտեղ էլ լավ աճում էր, բայց ինչպես եղավ, երեխաները անգգուշաբար տրորել էին: Շատ վշտացանք, որ զրկվել էինք Վարդանի Ծառի մեզ բաժին հասած ժառանգից: Անցան օրեր, և որքա՜ն եղավ մեր ուրախությունը, երբ նկատեցինք, որ նրա աճը չի դադարել, շտկվել է, շարունակում է բարձրանալ: Սկսեցինք աչքի լույսի պես պահպանել, խնամել... Հինգերորդ տարին է, և նա արդեն մեկուկես-երկու մետր հասակ է արձակել, և հույս ունենք՝ կհարատևի նույնքան, որքան մայր կաղնին:

Վարդանի Ծառը իրենից հետո ժառանգներ է թողել, արմատակալում են նույն հողում, ամեն մեկը մայր ծառի հզոր կենսունակությունն իր մեջ կրելով: Դրանցից մեկն էլ աճում է Վարդանի Ծառի տեղում, նույն աղբյուրի գլխին, որ հանդիսավոր իրադրության մեջ, իր ձեռքով տնկեց Մեծն Վարդանի զորավարական քանքարն ու հայրենասիրության բարոյական ուժը ժառանգած մարշալ Հովհաննես Բաղրամյանը:

*ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ*



# ԲԵՆԹՈՆԻՏ՝ ԱՇԽԱՐՀԻ ՈՒԹԵՐՈՐԴ ՀՐԱՇԱԼԻՔԸ

Գետահովիտցի Սարիբեկը դպրոցական տարիներին հովվություն էր անում Իջևանի իրենց սարերում, և նրա մտքով չէր անցնում, թե հովվությունը ինչպիսի դեր է կատարելու իր հետագա կյանքում:

Նա գուցե աշխարհի յոթ հրաշալիքների մասին դեռ չէր լսել, պատկերացում իսկ չուներ, կամ եթե ուներ՝ շատ աղոտ: Սակայն ութերորդ հրաշալիքը մանկուց լավ ծանոթ էր նրան, փռված էր իր ոտքերի տակ, կանգնած էր իր հայացքի դեմ... Միայն թե չգիտեր, որ գիտնականները դրան տվել են «աշխարհի ութերորդ հրաշալիք» անունը:

Հովիվ պատանին մի օր էլ քննություն տվեց և ընդունվեց Երևանի պետական համալսարանի երկրաբանական ֆակուլտետը: Այժմ արդեն ուսանող Սարիբեկ Ղազարյանը, հերթական դասախոսություններից մեկի ժամանակ, լսում է «խալանդական շպատ» կոչվող բյուրեղի հատկությունների, օպտիկայի ասպարեզում նրա կիրառության մասին, և երբ տեսնում է նմուշը, բացականչում է.

— Ինչո՞ւ խալանդական... Դրանից մեր սարերում ես շատ եմ հանդիպել... Իսլանդիայից հո չե՞ն բերել մեր սարերում շաղ տվել:

— Եթե դու կարողանաս ասածդ հաստատել, գիտե՞ս ինչ ծառայություն մատուցած կլինես մեր երկրին,— ասում է դասախոսը:

Սարիբեկն ասածն հաստատում է՝ նմուշը բերում է, ապա և երկրաբաններին առաջնորդում այնտեղ: Համալսարանն ավարտելուն պես նա նշանակվում է երկրաբանական գիտախմբի ղեկավար, ուղարկվում հիշյալ հանքավայրն հանգամանորեն ուսումնասիրելու: Արդյունքներն այնքան քաջալերող էին, որ խոսք էր գնում, գործն ավարտելուց հետո, ներկայացնել այն պետական մրցանակի... Սակայն քիմիկոսները կանխեցին երկրաբաններին՝ արհեստական միջոցներով ստացան խալանդական շպատ, որն իր հատկություններով գերազանցելով բնականին՝ դուրս մղեց այն կիրառությունից: Սարիբեկի քրտնաջան աշխատանքի արդյունք հանդիսացող 15 տոննա խալանդական շպատը, որը նա տարիների ընթացքում կորզել էր Իջևանի հանքավայրից իր փոքրիկ մուրճով ու բրիչով, իբրև նվեր բաժանվեց Միության երկրաբանական թանգարաններին:

Երիտասարդ երկրաբանը ստացավ նոր առաջադրանք:



Բենթոնիտի գործարանը

Գործարանի դիրեկտոր Սարիբեկ Ղազարյանը



Ամերիկայում կա մի քաղաք՝ Բենթոն անունով: Այս քաղաքի մոտակայքում հայտնաբերվել է կավահողի մի տեսակ, որն ստացել է բենթոնիտ անունը և իր բարձր հատկությունների համար հռչակվել «աշխարհի ութերորդ հրաշալիք»: Բենթոնիտը մեծ



Ազատամուտ ավանը

կիրառություն ունի մետաղարդյունաբերության մեջ, նավթահանության ասպարեզում, սննդարդյունաբերությունը այժմ դժվար է պատկերացնել առանց բենթոնիտի, դրանով մաքրում են բուսական յուղերը: Անասնակերին որոշ քանակությամբ բենթոնիտ խառնելու դեպքում անասունների մսատվությունը բարձրանում է մինչև 40 տոկոս: Բենթոնիտն օգտագործվում է նաև բժշկության և ուրիշ-ուրիշ շատ ասպարեզներում:

Բենթոնիտ... Աշխարհիս երեսին Բենթոն քաղաք դեռ գոյություն էլ չի ունեցել, որ Իջևանում կավահողի այդ լեռը կար, իջևանցի կանայք նրա հատկություններին քաջածանոթ, օճառի թանկություն սակավ տարիներին, օճառի պես կտրտում, բերում էին այդ կավահողով իրենց լվացքն անում, լվացքը լույսի պես մաքրվում էր, լվացք անողի ձեռքերը մետաքսի պես փափկում:

Ծնունդով իջևանցի, երկրաբան, ակադեմիկոս Աշոտ Ասլանյանը դեռևս 1946 թ. այդ հանքավայրի մասին գրել է, ձեթ-օճառ կոմբինատի գլխավոր ինժեներ, քիմիկոս Աշխեն Եղիայի Ջուրաբյանը Լենինգրադում զեկուցումներ է կարդացել: Հասել էր գործն սկսելու ժամանակը: Եվ ահա երիտասարդ երկրաբաններ Սարիբեկ Ղազարյանի և Կորյուն Մկրտչյանի գիտախումբն իր վրանն է խփում այդ լեռան լանջի աղբյուրի մոտ:

— Օրվա աշխատանքից հոգնած գալիս էինք, այդ աղբյուրի ջրում լըվանում մեր գուլպաներն ու հագուստը, մաքրմաքրվում էր, առավոտյան մաքուր-մաքուր հագնում էինք, շարունակում աշխատանքը:

Հանքավայրի ուսումնասիրությանն ուղեկցում են մի շարք արկածային իրադարձություններ, որոնք կարող են և գեղարվեստական վիպակի հրաշալի նյութ հանդիսանալ:

Կառավարութ անը ներկայացված համոզիչ նյութերի հիման վրա որոշում է կայացվում շահագործման հանձնել Իջևանի «աշխարհի ութերորդ հրաշալիքը», կառուցել այնտեղ «բենթոնիտի» գործարան:

Դեռևս գոյություն չունեցող գործարանի դիրեկտոր է նշանակվում գետահովիտցի երբեմնի հովիվ պատանին՝ երկրաբան Սարիբեկ Ղազարյանը, որը գլխավորում է գործարանի կառուցման և շահագործման հանձնելու աշխատանքները և առ այսօր հանդիսանում է նրա անփոփոխ դիրեկտորը:

Ի՞նչ է ներկայացնում իրենից այդ գործարանը. մի կողմից հանվում է կավահողը, խոշոր բեռնատարներով տեղափոխվում գործարան, մյուս կողմից վիթխարի մամլիչ սարքավորումների մեջ մամլվում, ավտոմատ հոսքով տեղափոխվում է հնոցները, որոնք հազար աստիճան ջերմության տակ հանքանյութն այրում են և փոշիացած կավահողը, դարձյալ ավտոմատ սարքերով լցնում թղթե ամուր պարկերն ու առաքում ուր հարկն է:

Գործարանը արտադրանք է տալիս 1978

թվից: Առայժմ աշխատում են հուսքային երեք գիծ: Կառուցվում են ևս հինգը: Հանքանյութի պաշարները, մասնագետների վկայությամբ, շատ-շատ են:

Գոյության կարճ ժամանակամիջոցում գործարանն իր բանվորական ավանն է ստեղծել՝ երեք հազար հինգ հարյուր բնակչով: Ավանին տրվել է «Ազատամուտ» անունը, ի հավերժացումն այն բանի, որ 11-րդ Կարմիր բանակը Իջևանի սարերով մուտք գործեց Հայաստան, բերելով ցանկալի ազատությունը բնաջնջման եզրին գտնվող հայ ժողովրդին:

Ազատամուտը ժամանակակից քաղաքի նորակառույց թաղամաս է հիշեցնում: Տարածված է անտառածածկ լեռան փեշերին, անտառի եզրին: Փողոցները ու բակերը բարեկարգ են, ծառազարդ, ծաղկազարդ: Ավանն ունի իր միջնակարգ դպրոցը, մանկապարտեզը, մսուրը և անգամ իր երաժշտական դպրոցը: Կառուցվում է կուլտուրայի պալատ: Կունենա մարզական հրապարակ, ջրավազաններ, լողավազաններ:

Ոչ միայն Իջևանի, այլև մեր հանրապետության կարևորագույն ձեռնարկություններից է հիշյալ գործարանը: Ափսոս միայն, որ մեր հայրենի հանքանյութը, որին ժողովուրդը գիլ է կոչում, աշխարհի կողմից ճանաչված և ընդունված է մեզ ոչինչ չասող, հեռավոր ամերիկյան Բենթոն քաղաքի, և ոչ թե իր ծննդավայրի, իր ծննդյան անունով:

# ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ՃԱՄԲԱՐ՝ ՎՐԱՆՆԵՐԻ ՏԱԿ

Սա բենթոնիտի գործարանի աշխատողների երեխաների ճամբարն է, որը տեղավորված է վրաններում, վրաններն էլ անտառի մեջ են, իսկ չորս կողմ լեռներ են՝ ծածկված դարձյալ ծառախիտ անտառներով: Մայրուղին ճամբարի մոտով է անցնում, բայց եթե չլինի վառ գույներով ներկված մուտքը, կարելի է կողքից անցնել ու չնկատել քըսանից ավելի վրանները, որոնց տակ յուրաքանչյուր հերթափոխում հարյուր հիսուն երեխա է հանգստանում:

Ճամբարն ունի լավ խաղահրապարակներ, տարբեր մարզաձևերով զբաղվելու հնարավորություններ, և հաճախ հանդիպման համար հրավիրվում են հանրապետության աչքի ընկնող արվեստագետներ, այլ ասպարեզների նշանավոր մարդիկ:

Դրուժինան կրում է Մայիսյան ապստամբության ղեկավարներից՝ Ենոք Մկրտումյանի անունը: Յուրաքանչյուր հերթափոխի ճամբարականներն այցելում են նրա հայրենի գյուղ՝ Ենոքավան, լսում քսանչորսամյա հերոսի կյանքի ու հեղափոխական գործունեության մասին, ծանոթանում նրա անձնական իրերին և այն ամենին, ինչ խնամքով պահպանվում է տուն-թանգարանում:

Դրուժինան ստանձնել է անտառի շեֆությունը: Քանի որ մայրուղին անտառի միջով է անցնում, իսկ ձորում էլ բուժիչ հանքային ջրեր ու սառնորակ աղբյուրներ կան, գրեթե ամեն օր սեփական մեքենաներով մարդիկ են գալիս այստեղ հանգստանալու: Հանգստանալը լավ է, բայց նրանք նաև վնաս են հասցնում անտառին՝ աղտոտում են շըրջապատը:

Եթե ճամբարականները ժամանակին վրա են հասնում, պահանջում են, որ աղտոտողները իրենք էլ հավաքեն մնացուկները, եթե ուշանում են, ապա ստիպված իրենք են հավաքում: Նրանք նաև մաքրում են անտառը չոր ճյուղերից ու չորացած ծառերից: Բնակավայրերից հեռու գտնվող անտառում նման աշխատանք գրեթե չի կատարվում, մինչդեռ փտած ծառերն ու չորացած ճյուղերը հիվանդության [illegible] են [illegible] բույսերի համար:



մարդու ձեռքի մատներին:

Փիփերթների թփերի կողքով դուրս ենք գալիս ջերմոցից ու խառնըվում բազմերանգ ծաղիկների գույներին: Տիգրանը լուսանկարում ու լուսանկարում է, մինչև որ վերջանում է ֆոտոժապավենը:

Օնիկ Հայրիկի այգում 140 տեսակի դեկորատիվ ծառեր կան, 50 տեսակի կակտուսներ, 60 տեսակի ծաղիկներ և այլն:

Այգու այցելուների տըպավորությունների գիրքը լցված է հիացմունքի և զարմանքի արտահայտություններով, գըրված աշխարհի ամենատարբեր լեզուներով:

Օնիկ Հայրիկը մանկուց ունեցել է ծառ ու ծաղկի պաշտամունք: Նրա մեջ այդ սերը չի մեռել նույնիսկ մեծ եղեռնը տեսնելուց հետո, որից հրաշքով փրկվել է ինքը... Որբություն... Օտար ափերում անուրախ կյանք, վերջապես հայրենադարձություն... Իսկ տասնամյակները գլորվում էին: Նա անցավ կենսաթոշակի և ամբողջովին նվիրվեց ծաղիկներին:



# ԾԱՂԿԱՀԱՆԴԵՍ

Երբ ձեռքս հպվեց միմոզայի նեղ տերևներին, տերևներն անմիջապես թառամեցին, կախվեցին ցած:

— Մարդու նման խըռովկան է,—իմ շփոթվածությունը նկատելով, ժպտաց ծաղկաբույծը,— ա՛յ, դրա համար՝ էլ անունը խռովկան միմոզա են դրել:

Խռովկան միմոզայի տերևները մոտ 10 րոպեից էլի ուղղվեցին, վերականգնանացան, երբ զգացին, որ իրենց էլ չեն նեղացնի:

Ջերմոցում, խռովկան միմոզայի կողքին, «կանաչ հրաշքների» շքահանդես է: Այստեղ կարելի է տեսնել ավստրալիական էվկալիպտներ, ալոեի բազմաթիվ տեսակներ, մեքսիկական ագավա, որը ծաղկում է 25 տարին մեկ և 7 տարի հետո այդ ծաղկումի հրաշքը կատարվելու է այստեղ՝ ծաղկաբույծ Օնիկ հայրիկի այգում:

Ջերմոցի միակ քարե պատը չի երևում, ծածկված է կանաչ տերևներով: Օնիկ Հայրիկը բարձրացնում է տերևները ու ցույց է տալիս տերևների տակ թաքնըված բույսի բազմաթիվ մատները: Այս մատներով է բույսը պատին ամուր կառչելով՝ վեր մագլցել: Դրանք շատ նման են

Իջևանի քարքարոտ սարալանջի այս կտորը նրա քրտնաջան աշխատանքով դարձավ հրաշք այգի, դարձավ շրջանի տեսարժան վայրերից:

*ՄԽԻԹԱՐ ՌՍԿԱՆՅԱՆ*

Իջևանի մանկական գեղարվեստի դպրոցը հիմնադրվել է 1977 թվականին: Նրա սաները արդեն մասնակցել են բազմաթիվ ցուցահանդեսների, արժանացել մասնագետների ուշադրությանն ու դրվատանքին:



ՆԱՏՅՈՒՐՄՈՐՏ
Մեջինյան Արտակ,
3-րդ դաս.



ՀԱՅԿԱԿԱՆ ԳՅՈՒՂ
Անդրեասյան Վահան,
3-րդ դաս.



ԳԵՏԱՓԻՆ
Բլբուլյան Վարդուհի,
3-րդ դաս.

# Պատանի ֆիլատելիստների ակումբը



— Իջևանը մեր Միությունում առավել հայտնի է իր գորգերով և... պատանի ֆիլատելիստների ակումբով,— ասում է շրջանի ֆիլատելիստների ակումբի նախագահ Վարդան Մալխասյանը:

Ակումբը, որի 1150 անդամներից 950-ը դպրոցականներ են, հանրապետությունում երկրորդն է՝ Երևանից հետո: Դպրոցներում, հատկապես կենսաբանության, աշխարհագրության, պատմության և օտար լեզուների դասերի ժամանակ արդեն սովորություն է դարձել դրոշմանիշների օգտագործումը որպես դիդակտիկ նյութ:

Ակումբի անդամները դրոշմանիշեր են հավաքում տարբեր թեմաներով: Մի քանիսն էլ զբաղված են հետախուզական աշխատանքով, այսինքն հավաքում են որևէ երկրի կամ նշանավոր մարդու հետ կապված դրոշմանիշերը: Վերջերս պատանի ֆիլատելիստները ձեռք են բերել փորձարարական հողամաս, որտեղ ֆլորա-ֆաունա դրոշմանիշեր հավաքողները փորձելու են աճեցնել իրենց դրոշմանիշերի վրա եղած ծաղիկների տեսակներից:

Պատանի ֆիլատելիստները դրոշմանիշեր են փոխանակում Լատվիայի, Տաջիկստանի, Կուբայի, Բուլղարիայի, Անգլիայի և այլ երկրների ֆիլատելիստների հետ: Մի քանի անգամ նրանց մասին ջերմ խոսքեր է գրել «Филателия СССР» ամսագիրը:

Իջևանում մեր եղած օրերին, պատանի ֆիլատելիստները պատրաստվում էին մասնակցելու Հայաստանի 60-ամյակին նվիրված շրջանային և հանրապետական ցուցահանդեսներին:

## ՏԱՏԻՍ ԿԾԻԿԸ

ԻՓՐԱՏ ՍԻՎՔԱՐԻՑԻ

Տատիկս նստել
Մանածն էր կծկում,
Մտքերի անտակ
Ծովի մեջ մտած...

Ու մեկ էլ ինչպե՞ս,
Թե այդ ո՞նց եղավ՝
Կծիկը ձեռքից
Գլորվեց, ընկավ:

— Վա՜յ, բալա՛,— գոչեց,—
Կծիկս գնաց...
Ու թելի ծայրը
Ձեռքիս մեջ մնաց:—
Ես իջա ձորը
Այդ թելից բռնած.
Ու մոլորվեցի
Մնացի, շվար...
Ձորը շատ խորն էր,
Կծիկը չկար:

# ՄԱԿԱՐԱՎԱՆՔ



X—XIII դարերի Հայաստանի նշանավոր հուշարձաններից է, գտնվում է Աչաջուր գյուղից մոտ 3 կիլոմետր դեպի հարավ-արևմուտք, անտառի մեջ, բաղկացած իրար կից կառուցված երեք եկեղեցուց, ժամատնից, զանգակատնից և երկու մատուռից: Հարուստ է վիմական արձանագրություններով, բազմապիսի կենդանիների, թռչունների, ծաղիկների և մարդկանց շքեղ քանդակներով: Ցանկապատված է մեծ պարսպով, որը հիմնովին ավերակ է, կանգուն է միայն գլխավոր մուտքի կամարակապ դուռը: Պարիսպների ներսում պահպանվել են վանական միաբանության ընդարձակ կացարանների ավերակները: Հուշարձանի շուրջը տարածված է Մակարավանք ավերակ գյուղատեղին, որի բռնած ընդարձակ տարածությունը և բնակարանների մեծությունը վկայում են, որ նա մի ժամանակ եղել է մեծ բնակավայր:

Վանքն այժմ վերանորոգվում է հուշարձանների պահպանության վարչության կողմից: Վերանորոգող վարպետների բրիգադավարն է հանրապետությունում ճանաչված քարագործ Բաղդասար Հակոբյանը, որը մասնակցել է Գոշավանքի, Գնդեվանքի, Արենիի, Գառնիի և Հաղպատի հուշարձանների վերանորոգման աշխատանքներին:

# ԳԱԼԱՐԱՓՈՂԸ

ԱՆԱՀԻՏ ՓԱՐՍԱՄՅԱՆ



Գալարափողը հին էր, ագնիվ պղնձից, նախշազարդ և այնպես գեղեցիկ, որ չէիր ուզում ձեռքիցդ վար դնել: Իսկ երբ մոտեցնում էիր շուրթերիդ ու փչում, լսվում էր զիլ, առողջ, բայց կորած ու գեղեցիկ մի ձայն, մի հեռավոր, անծանոթ ցավի ճիչ: Գալարափողն ասես ճչում-կանչում էր մեկին, որը վաղուց չկար: Դա մի գեղեցիկ ու հազվագյուտ իր էր, հենց դրա համար էլ պատմության ծեր ուսուցիչը խնամքով պահում էր: Բայց դա նաև հիշատակ էր պապերից մնացած: Դրված էր մեծ, մութ, հնամենի պահարանում:

Այդ պահարանը գուցեև դուրս գցված լիներ, եթե չլիներ պատմության ծեր ուսուցիչը, որն ընտանիքի ավագն էր: Նրա հարսի ու տղայի համար դա դարն ապրած անպետքություն էր: Պատմության ուսուցիչը, որն հիմա չէր աշխատում, իր առանց այն էլ նեղլիկ սենյակը բերեց այն: Պահարանը ասես հասկանում էր նրան և շնորհակալ էր ծերունուն, որն ինքն էր ամեն օր շորով վերցնում պահարանի ու սեղանի վրայի փոշին: Իսկ գալարափողը փայլեցնում էր չոր շորով: Մեկ-մեկ էլ մոտեցնում էր շուրթերին ու փչում: Պատի այն կողմը թթված ճաշի նման սկսում էր խոսքի պղպջակներ նետել հարսը: Ծերունին ուշադրություն չէր դարձնում:



Մի տխուր, բայց գեղեցիկ ու արևոտ օր ծերունին առավոտից մինչև կեսօր փչում էր փողը... Երեկոյան նրան գտան մահացած:

Ժամանակ անց, հարսն ու տղան նրա սենյակը վերադասավորեցին և առաջին հերթին դուրս նետեցին մեծ, հին պահարանն ու գալարափողը: Պահարանն ընկած էր բակում, զուսպ և արժանապատվությամբ լի: Լավ էր, հայտնվեցին մարդիկ և տարան այն: Իսկ գալարափողը մնաց բակում ողջ գիշեր: Առավոտյան երեխաներից մեկը



Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ

գտավ ու տուն տարավ: Տղան փչում էր և նրան թվում էր, թե գալարափողը մի հին, անցած հեքիաթ է պատմում: Բայց տղայի մայրը, որի գլուխը միշտ ցավում էր և նա նեղվում էր, իր ասելով՝ «գալարափողի հանած աղմուկից», մի օր, երբ տղան տանը չէր, վերցրեց ու աղբին տվեց գալարափողը: Գալարափողը շատ բան էր տեսել, բայց այս մեկը չափազանց էր: Նա սեղմեց պղնձե շուրթերն ու լռեց: Աղբարկղում՝ նրա կողքին տորթի մի դատարկ տուփ էր, փչացած պոմիդորով լի կոտրված մի անոթ, հին բաքուչներ, սիգարեթի դատարկ տուփ, կոտրված սանր...

Եվ գալարափողը հիշեց. տարիներ, տարիներ առաջ էր: Ինքը ցոլցլում էր, հուրհրատում արևի տակ, ձիավոր ասպետի ձեռքին:

Ձին թեթև տարուբերվում էր ասպետի տակին, և թեթև օրորվում էին ասպետն ու ձեռքի գալարափողը: Հետո սուրում էին դաշտերով ու լեռներով...

Եվ ամենակարևո՞րը, երբ ասպետը հնչեցնում էր գալարափողը, ձայնի վրա գալիս հավաքվում էին մյուս ասպետները: Արև՜, կանա՜չ... գալարափողին թվում էր, թե իրականությունը այդ էր, որ կար, իսկ այս մռայլ աղբանոցը մղձավանջային երազ է:

— Աստվա՜ծ իմ,— լսվեց մեկի հառաչը, և գալարափողն սթափվեց: Հառաչողը կոտրված մի սափոր էր՝ նախկին ծաղկաման: Կարտոֆիլի կճեպների և մգլած կանաչու միջից բարձրացրել էր գլուխն ու լաց էր լինում:

— Ի՞նչ է պատահել,— հետաքրքրվեց մաշված բաքուճներից աջը:

— Էլ ի՞նչ պիտի պատահի,— ասաց սափորն ու ազատություն տվեց արցունքներին:— Ինձ դնում էին տան աչքի ընկնող անկյունում, իսկ երբ հյուրեր էին լինում՝ տոնական սեղանին,— հեծեծում էր սափորը ծանր լռության մեջ:

Երկար ժամանակ ոչ ոք չէր խոսում: Մի հոգնած, ծերունական հազ լսվեց, որից հետո.

— Մի՛ լար, մի՛ լար, ասում եմ, մենք բոլորս էլ մի ժամանակ ուրիշ էինք, և ուրիշ տեղում, գիտես միայն դո՞ւ ես: Լսիր, թե ի՛նչ եմ ասում. միշտ էլ կարելի է գտնել մի բան, որի համար արժենա ապրել: Լսո՞ւմ ես:— Եվ ձայնը լռեց:

Խոսողը մի հին գլխարկ էր: Ժամանակին պատկանել էր մի պրոֆեսորի: Մաշված բաքուճները պատկանել էր մի երգչուհու: Կոտրված սանրը երկար ժամանակ ապրել էր մի գեղեցիկ կնոջ պայուսակում:

Մի օր սրանց բոլորին հավաքեցին, բահով իրար վրա լցրին ու այրեցին:

Բոցերը բարձրանում էին, և գալարափողն զգում էր, որ իր վրայից մաքրվում-հալվում է տարիների կեղևը, այրվում է ամեն բան՝ և՛ գեղեցիկ անցյալը, և՛ անուրախ ներկան: Հին բաքուճներից միայն վրայի երկու կոճակները մնացին: Սանրը գունափոխվել էր ու ծռմռվել: Կոտրված սափորը ծածկվել էր մրով: Պրոֆեսորի գլխարկը (սինթետիկ նյութից էր) կծկվել դարձել էր մի գունդ:

Եվ երբ արևը դուրս եկավ, քամին քշեց տարավ այրվածի մնացուկները, գալարափողը շնչեց և կոկորդով մեկ կանչեց: Ինքն էլ չգիտեր ո՞ւմ էր կանչում, ինչո՞ւ:

— Միշտ էլ կգտնվի մի բան, որի համար արժե ապրել,— այրված ձայնալարերի պատճառով խռպոտ խոսեց այն, ինչ քիչ առաջ պրոֆեսորի գլխարկ էր,— միշտ էլ կգտնվի մի բան...



ԱԳՆԻԱ ԲԱՐՏՈ

լենինյան մրցանակի դափնեկիր



## ՏԽՈՒՐ ՕՐ

Կոպտեցի երեկ մայրիկին,
Ճխկացրի դուռն ու դուրս եկա,
Հաշտություն չկա էլ մեր մեջ,
Չկա՛, չէ՜, չկա՛:

Արթնացա, դեռ իմ ականջում
Նախատող ձայնն էր մայրիկի.
«Ես պետք է ամեն ինչ իմանամ,
Ամեն ինչ պատմի՛ր ինձ, որդի՛,
Դու ինչո՞ւ անկեղծ չես ինձ հետ,
Վե՛րջ տուր խաբելուն ու ստին»:

Չեմ լինի անկեղծ նրա հետ,
Թող հույսեր չունենա իզուր,
Փոքր չեմ արդեն՝ չեմ ուզում,
Որ ինձ փոքրի տեղ դնի նա,
Հենց լավ էլ դիտմամբ չեմ ասում,
Ամեն ինչ պե՞տք է նա իմանա...

Բայց այսօր տխուր եմ արթնացել,
Անչափ տխուր եմ ու տրտում,
Այսօր ես տխուր արթնացել
Եվ նստել դաս եմ սերտում:

## ԴԺՎԱՐ ՄԱՐՏ

Այսօր ես նորից եմ պղտորվել,
Վատ սովորությունններն իմ կրկին
Տարան ինձ ծուռումուռ ճամփեքով,
Թեև այդ չէր ուզում իմ հոգին:

Հաճախ ես անարդար եմ լինում,
Հաճախ ես լինում եմ մեղավոր
Ու հիմա խռով եմ ես ինձնից,
Ու հիմա որոշել չեմ կարող,
[illegible]

# ԴԵՌԱՀԱՍՆԵՐԸ ՍԱՌՆԱՄԱՆԻՔԻՆ

Դրսում այսօր ցուրտ է սաստիկ,
Սառնաշունչ է քամին,
Նրանք այնպես են հագնվել,
Ասես գարուն լինի:

Թեթև, թեթև բաճկոններով,
Սրթսրթում են դրսում,
Կուչ են եկել, կուզիկացել,
Սակայն տուն չեն գնում:

Վշվշում է տատն ինքն իրեն.
— Տե՞ր իմ, ի՞նչ են անում,
Սառչելու են...
— Չէ՛, չէ՛, տատի՛,
Կյանքից ետ ես մնում:
Մեզ պես ջահել տղաները,
Այս ցրտից չեն մրսի,
Ցուրտն ինչքան էլ սաստիկ լինի,
Մեզ որ՝ չի վնասի...

...Թեթև հագած երբ դողում են
Դրսում՝ ցրտից դաժան,
Ուրիշ բան չէ, դա համարեք
Հասունացման նշան:



Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

Թե ե՞րբ եմ տարվում ստերով,
Թե ե՞րբ եմ իսկապես ճշմարիտ:

Չորս կողմից խրատում են այսպես.
«Խելացի և ուժեղ տղա ես,
Աշխատիր դու ինքդ կոտրել քեզ,
Աշխատիր ու ինքդ հաղթիր քեզ»,—
Չորս կողմից խրատում են այսպես:

Ցանկանալն ուրիշ է, ա՛յ, ասեմ,
Կարողանալն է դժվարին,
Ինքն իր հետ շարունակ կռվելը,
Ինքն իրեն հաղթելն է դժվարին:

Թարգմ. Մ. ՈՍԿԱՆՅԱՆԻ



ՀՍՍՀ ԳԱ թղթակից-անդամ Մորուս Ստեփանի Հասրաթյանը (1902—1979 թթ.) նախնական կրթությունը ստացել է հայրենի՝ Սիսիանի շրջանի Ախլաթյան գյուղի դպրոցում, միջնակարգը՝ Բաքվում։ Այստեղ, պրոլետարական միջավայրում նա զինվորագրվում է հեղափոխության գործին, 1918—1921 թթ. մասնակցում Բաքվի Կոմունայի, Հյուսիսային Կովկասի և Զանգեզուրի քաղաքացիական կռիվներին։ 1925—1927 թթ. կոմերիտական ղեկավար աշխատանք է կատարում Սիսիանում, Գորիսում, Դիլիջանում։ 1930 թ. ավարտում է համալսարանը և Լենինգրադում սովորում ասպիրանտուրայում՝ Ն. Մառի ու Հ. Օրբելու ղեկավարությամբ, որից հետո ամբողջովին նվիրվում է գիտական աշխատանքի։ Մ. Հասրաթյանի ուսումնասիրությունները վերաբերում են հայ ժողովրդի պատմությանը, բանասիրությանը, հնագիտությանը։ Մեծ է նրա ավանդը սայաթնովագիտության մեջ՝ Մ. Հասրաթյանը հայերեն է թարգմանել բանաստեղծի վրացերեն ու ադրբեջաներեն տաղերը, ճշգրտել և մեկնաբանել հայերեն երգերը։ Նա 1930-ական թթ. աշխատել է նախ որպես հեղափոխության թանգարանի, ապա Մատենադարանի, իսկ 1968—1975 թթ.՝ Հայաստանի պատմության թանգարանի դիրեկտոր։ Մ. Հասրաթյանը մոտ 30 տարի դասախոսել է Երևանի պետհամալսարանում և Խ. Աբովյանի անվան հայկական պետական մանկավարժական ինստիտուտում։



*ՄՈՐՈՒՍ ՀԱՍՐԱԹՅԱՆ*

# ԲԱՐ՝ ՀԱՅԱՆՇԱՆ, ՀԱՅԱԳԻՐ

«Հայր, ողջ գյուղը պոկվել է արմատից և հեռանում է դեպի Արևմուտք, թշնամի հորդաները, ուր որ է կմտնեն նաև մեր ձորերը, մանավանդ որ Արփայի ափով մեծ ճանապարհ է տանում Արևելքից Արևմուտք»։ Այս հորդորն էր կարդում ավագ որդին իր քարագործ վարպետ հորը։ Նման վարպետներին երկրում ասում էին կազմող, կամ վարդապետ (ճարտարապետ)։ Վաղուց սկսած խաչքարը ավարտելու վրա էր

վարպետը, մնում էր ստորին ուռուցիկ աղաչանքը՝ քարի հիշելու վարպետին ու նրա ծնողաց: Վախ չունե՞ր վարպետ Գրիգորը, թե՞ վստահ էր, որ իրեն և իր ընտանիքը պետք է խնայել դաժան, արյունը ջրի տեղ, կռիվը հարսանիքի տեղ ընդունող աննահանջ վաչկատուն նետաձիգը: Որդին պատրաստել էր տանելունն ու թողնելունը, գրաստներն ու եզները բարձել: Բայց վարպետ Գրիգորը շարունակում էր խուլ ձևանալ: Սովորականի պես, հանդարտ, առանց շտապելու, ճարտար ձեռքերի մեջ շարժում էր փորիչն ու քերիչը:

Վերջապես նրա համբերությունն էլ հատավ: Կանչեց իր տագնապահար որդիներին, հատկապես իր արհեստին ու արվեստին հետևող միջնեկին և կաշվե գոգնոցի քարի փոշին թափ տալով ասաց.— Գիտեք, որ ձեր հայրը՝ վարպետ Գրիգորը կիսատ, հապճեպ, անորակ գործ չի անի: Ես տասնյակ խաչքարեր եմ կազմել ողջ Վայոց ձորի մեջ, անգամ Ծղուկ, Ճահապոնս և Գեղամա գավառներում, բայց մեր փոքրիկ գյուղի մեջ տակավին ոչ մի խաչքար չկա կանգնած: Ինչ որ փայտից է, մաշվելով, այրվելով վերանալու է: Քարե հիշատակն է մնալու հավիտյան: Մենք սարի, քարի զավակներ ենք, մոտիկ ու հեռավոր ապուպապերից ժառանգած շինարարի ձեռքով ու շնորհքով: Մեզ նման մի ոտատակ երկրում պետք է կերտած քարի հիշատակով կապվենք մեր գալիք սերունդների հետ: Մեր գյուղում, թեկուզ և այս անբարի ժամանակում, պետք է թողնեմ գեթ մեկ հատ խաչքար, որպես մնայուն, հավիտյան հիշատակ: Դուք գնացեք, ես գործս կավարտեմ և, հուսով եմ, կգամ կհասնեմ ձեզ: Բայց եթե չհասա, ինձանից ձեզ խրատ, երբ վերադառնաք ձեր հողին, ջրին, պապերի գերեզմանին, նորեն քար կազմեք, որդիք, հայանշան, հայագիր...

**1920—1980**





*Կոմիտասի անվան կամերային երաժշտության տունը*




ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ
*բանասիրության դոկտոր*

### 81. ԱՍՈՒՄ ԵՆՔ ՄԻ ԲԱՆ՝ ՀԱՍԿԱՆՈՒՄ ԵՆՔ ՀԱԿԱՌԱԿԸ, ԻՆՉՈ՞Ւ ԵՆՔ ԱՅԴՊԵՍ ՎԱՐՎՈՒՄ ԿԱՄ՝ ՀԵԳՆԱՆՔԻ ՄԱՍԻՆ

«Քաջ» ածականն, իհարկե, ավելի քան դրական է, բայց արի ու տես, որ դառնում է ավելի քան բացասական, երբ ասում ենք «Քաջ Նազար»: «Ծուռ» ածականն ի՞նչ տարակույս, դրական ոչինչ չունի իր մեջ, բայց ինչքա՜ն գերդրական, հրապուրիչ է դառնում, երբ ասում ենք «Սասնա ծռեր»:

Մի դեպքում դրական բնորոշմամբ տալիս ենք բացասական գնահատական, ցուցաբերում շեշտված արհամարհական վերաբերմունք, մյուս դեպքում բացասական բնորոշմամբ տալիս ենք դրական գնահատական, ցուցաբերում հիացական վերաբերմունք:

Երկու դեպքում էլ ասում ենք մի բան՝ հասկանում ենք հակառակը: Երկու դեպքում էլ գործ ունենք այլաբերության այն տեսակի, ոճաբանական այն ձևի հետ, երբ խոսքը ձեռք է բերում հակառակ իմաստ:

Մտքի արտահայտման այդ ձևը կոչվում է հեգնանք կամ իրոնիա: Այս իրոնիա բառը ևս հունարեն է, որ նշանակում է ձևացում, սքողված ծաղր: Իրոք՝ մենք ձևանում ենք, թե գովում ենք մեկին «խելքի ծով» կամ «խելքի տոպրակ» ասելով, իրականում՝ հակառակն ենք անում: Բայց և մեկի հանդգնությունը, համարձակությունը գովելիս նրան «գիժ» կոչելով ձևանում ենք, թե վատ բան ենք ասում, իրականում՝ ճիշտ հակառակն ենք անում: Եվ այդ մարդը՝ մեր հեգնանքի առարկան, դրանից չի նեղանում, այլ շոյվում է: Սասունցի Դավթին՝ Սասնա ծռերից մեկին ժողովրդական վեպում ի՞նչ ասես, որ չեն ասում՝ է՛լ խելառ, է՛լ թլոլ (թլվատ), բայց որքա՜ն խանդաղատանք, հիացմունք կա այդ իբրև թե բացասական բնորոշումների մեջ: «Իբրև թե»,— սա է հեգնանքի սկզբունքը,— իբրև թե՝ մի բան, իրականում՝ մեկ ուրիշը, ճիշտ հակառակը: Ահա թե ինչու հին հույները ոճաբանական այդ եղանակը կոչել են նաև անտիֆրազիս, որ նշանակում է հակադարձություն: Նրանք այն էլ են նըկատել, որ մտքի արտահայտման այդ ձևն անմիջական կապ ունի ծիծաղի հետ, այդ պատճառով էլ դա կոչել են նաև աստեիզմ, որ նշանակում է կատակ:

Ինչո՞ւ ենք մեջ բերում այս ամենը: Ցույց տալու համար, թե նրանք՝ հին հույները, մեզանից երկու և կես հազարամյակ առաջ ինչպե՜ս են խորացել խոսքի արվեստի մեջ, բացել դրա ծալքերը, բացատրել դրա ամենատարբեր յուրահատկությունները:

Եթե հեգնանքը սերտ կապ ունի ծիծաղի հետ, եթե ծիծաղն է հեգնանքի ակունքը, ապա կարևոր է իմանալ ի՞նչ է ծիծաղը, ե՞րբ է առաջ գալիս: Ծիծաղը, մասնագետ մարդկանց անհերքելի համոզմամբ, մեր վերաբերմունքի դրսևորման ձևերից է երևույթների նկատմամբ և առաջ է գալիս այն ժա-

մանակ, երբ ձևի ու բովանդակության հակասություն է նկատվում մի որևէ երևույթի կամ մարդու մեջ: Ասենք թե՝ երբ երկչոտ մարդը պարծենում է իր չունեցած արիությամբ:

Ծիծաղն ուրա՞խ երևույթ է: Այո՛,— միաբերան կպատասխանեք դուք: Մի՛ շտապեք այդպես պատասխանել, միշտ չէ, որ ծիծաղելին և ուրախալին, հեգնանքը և հրճվալին իրար բռնում են: «Ծակատագրի հեգնանք», «պատմության հեգնանք» արտահայտությունները հրճվալի ոչինչ չեն պարունակում: Լսե՞լ եք այսպիսի մի դարձվածք՝ «ծիծաղ արցունքի միջից», երբ չես էլ իմանում ծիծաղե՞ս կատարվածի վրա,— ասենք թե «Մի կաթիլ մեղրում» կատարվող դեպքերի վրա,— թե՞ լաց լինես, ծիծաղելի՞ն է շատ, թե՞ վշտալին: Զուր չէ, որ երգիծաբան Առանձարը թուրքական բռնության պայմաններում իր գլխին եկած փորձանքները պատկերող պատմվածքների ժողովածուն հենց այդպես էլ կոչել է՝ «Վշտի ծիծաղ»:

Ավելին, ծիծաղը կարող է լինել և զայրալից. այդպես ծիծաղում են չափազանց վնասակար երևույթների վրա:

Մտերիմ հեգնանք էլ կա, որ առատորեն սփռված է Պարույր Սևակի «Մարդը ափի մեջ» գրքում: Այստեղ բանաստեղծը շարունակ ձեռ է առնում իրեն, բայց մտերմաբար, վարակիչ ժպիտով. «Ես նոր հասկացա, Որ շատ եմ նման փետրվար ամսին. Գիտեմ կարճանալ ու երկարանալ», «Է՛հ, մեկ էլ տեսար՝ Պար գալս բռնեց Խարխուլ ու ճոճկան կամրջի վրա»:

Անհոգ ու պայծառ է մեր ծիծաղը, երբ կարդում ենք Թասպեի «Բարոն Մյունխհաուզենի զարմանալի արկածները», երբ լսում ենք Թումանյանի Սուտլիկ որսկանի փչոցները: Եվ լեցուն է հրճվանքով, երբ կարդում ենք, թե Սասունցի Դավիթն ինչպես է հաղթում Մսրա Մելիքին:

Ինչո՞վ են պայմանավորված ծիծաղի անհամար գույները՝ ամենամեղմ-տականից մինչև ամենադրականը: Նըրանով, որ ձևի ու բովանդակության հակասությունը կարող է և՛ դրական բնույթ կրել, և՛ բացասական: Երբ հայտնապես չար ու դաժան մարդը բարբառում է մարդկային սրտի բարությունից, դա հակասություն է, բայց բացասական բնույթի: Դա ևս ծիծաղ է հարուցում, բայց հակակրանքի ծիծաղ: Իսկ երբ թոթովախոս մանուկը հանկարծ ասում է հասակին չբռնող խելոք խոսքեր, դա էլ է հակասություն, բայց դրական բնույթի: Դա էլ է ծիծաղ շարժում, բայց համակրանքի ծիծաղ:

Ծիծաղի այս տարբերություններն էլ կազմակերպում են հեգնական խոսքի տարբեր ձևերը: Եթե խոսքը մեր զգացմունքների (իհարկե, նաև մըտքերի) արտացոլումն է,— իսկ դա իրոք այդպես է,— ապա նա պետք է ի վիճակի լինի և ի վիճակի է արտահայտելու նաև մեր ծիծաղն իր անթիվ-անհամար գույներով ու երանգավորումներով: Եվ դրանցից ամեն մեկի համար պետք է ի հայտ բերի իր խոսքային համարժեքները:

Հենց այդպես էլ լինում է:

Բացասական բնույթի հակասությունները սնունդ ու ծնունդ են տալիս ծաղրին, ծանակումին, ծաղրուծանակին, գրական արվեստում՝ սատիրական գրականությանը:

Դրական բնույթի հակասությունները ծնունդ ու սնունդ են տալիս համակրանքի ծիծաղին՝ բարեհոգի ժպիտից մինչև քահ-քահ քրքիջը, գրական արվեստում՝ հումորիստական գրականությանը:

Երկուսն էլ հեգնանքի, իբրև այլաբերության տեսակի, դրսևորումն են, բայց հակառակ վերաբերմունքով: Դրանց տարբերությունը պետք է լավ ըմբռնել ոչ միայն լավ ընթերցող, այլև

լավ զրուցակից լինելու, ընկերական միջավայրում սիրված լինելու, կատակից զուր տեղը չնեղանալու, բայց և կոպիտ, գռեհիկ կատակով ընկերոջը չվիրավորելու, ժողովրդի իմաստուն խոսքով ասած՝ հանաքը դանակ չդարձնելու համար:

Չե՞ք նկատել՝ կատակ կա, որ ոչ միայն վիրավորական չէ, այլև դուրեկան է, կատակ էլ կա, որ դանակի պես խոցում է մարդու սիրտը: Ժողովրդական առածները, թե «Թրի կտրածը կլավանա, լեզվի կտրածը չի լավանա», «Լեզվի ծակածին դեղ չկա», ամենից առաջ և ամենից շատ հեգնանքին են վերաբերում: Ինչքա՜ն վեճ ու կռիվ է ծագել վիրավորական կատակի կամ էլ անմեղ կատակը ճիշտ չհասկանալու հետևանքով: Այդպիսի մարդու մասին ասում են՝ նրա հետ գործ չունես, նա հանաքի չի դիմանում, և ավելի ընտույց՝ նա հումորի զգացում չունի: Եթե իրոք չունի՝ դա դժբախտության նման բան է. ինչպես կարեկցության արժանի է նա, ով նրբամիտ անեկդոտից բան չի հասկանում ու զարմացած նայում է, թե ուրիշները ինչի՞ վրա են ծիծաղում, անտարբեր է երգիծական գրվածքի, կատակերգական ներկայացման հանդեպ, ո՛չ սրամտել գիտի, ո՛չ էլ գոնե հասկանալ սրամիտ խոսքը, հենց միայն նեղանալ գիտի: Տխո՜ւր վիճակ:

Չե՞ք նկատել՝ ընկերական միջավայրում ինչքան սիրված են լինում սրամիտ ու սրախոս տղաները ու աղջիկները, որ իրենց կատակներով ծիծաղ ու ժպիտ են պարգևում մերձավորներին, փարատում տաղտուկն ու ձանձրույթը, դժվարը՝ հեշտացնում: Ամենուրեք, բոլոր պայմաններում:

Վերջերս ես մի հարցազրույց կարդացի տիեզերագնաց-օդաչու Գեորգի Գրեչկոյի հետ: «Կարելի՞ է տիեզերք թռչել հումորի զգացում չունենալով»,— հարցրել են նրան: «Չի՛ կարելի»,— եղել է պատասխանը՝ կարճ ու կտրուկ: Եվ նա պատմել է այսպիսի մի դեպք. տիեզերագնաց-օդաչուներից մեկը թռիչքի ժամանակ հոգնել է ու քուն մտել, մյուսը բախել է նրա խցիկի դուռը: «Ո՞վ է»,— հարցրել է սա արթնանալով: Այնքան բան, և ծիծաղը պատրաստ է՝ ո՞վ կարող է լինել, եթե տիեզերանավի մեջ երկուսն են, միա՛յն երկուսը:

Ժպիտը, ծիծաղը, քրքիջը կյանքի զարդարանքն են, ուրախությունն ու հրճվանքը, ինչպես դրանց խոսքային համարժեքները՝ լեզվի ու գրականության զարդարանքն ու հրճվանքը:

Հումորի զգացումը, ինչպես ամեն մի հատկություն ու զգացում կարելի է կրթել ու զարգացնել:

Բայց ինչպե՞ս:

Իհարկե, նշանավոր երգիծաբանների գրվածքները կարդալով, սրամիտ դարձվածքների, աֆորիզմների, անեկդոտների, առածների տրամաբանությունը յուրացնելով: Ինչքա՜ն սրամտություն, հումոր, ժպիտ կա մեր ժողովրդական ասացվածքներում՝ «Գողը որ տանից լինի, եզը երթիկից կհանեն», «Լավ է լինել մկան գլուխ, քան առյուծի պոչ», «Փորձված սատանան լավ է, քան անփորձ հրեշտակը», «Կուժ, քեզ եմ ասում, կուլա, դու լսիր», «Հարևանի հարսը սիրուն է լինում», «Անճարը կերել է բանջարը», «Ծիշտ խոսողի ձին թամքած պիտի լինի»: Ովքե՞ր են եղել անթիվ-անհամար սրամիտ դարձվածքների, խաղացկուն դատողությունների հեղինակները, որ կարողացել են մի քանի բառի մեջ այդքան իմաստ ու ժպիտ խտացնել: Դա մենք երբեք չենք իմանա, ինչպես չգիտենք, թե ովքեր են այնքան սուր ու սրամիտ անեկդոտ հնարողները (ի դեպ, այդ բառն էլ հունարեն է. անեկդոտ նշանակում է չհրատարակված): Ահա խնդրեմ՝ ատամնաբույժը մի վայրկյանում հանում է մեկի ատամը և չափից դուրս

մեծ վարձ է ուզում. «Մի վայրկյանում քաշեցիք, և այդքան փո՞ղ»,— դժգոհում է այցելուն: «Իսկ ի՞նչ է, կուզենայիր մի ժա՞մ տևեր»:

Այսպես պատասխանելու համար խելք ունենալը քիչ է, պետք է նաև սրամիտ լինել, հեգնելու կարողություն, հումորի զգացում ունենալ: Բայց և պետք է իմանալ, որ կատակը կատակ բան չէ, չափի նուրբ զգացում է պետք «համը չհանելու» համար: Հեգնանքն առհասարակ երկսայրի սուր է, մի քիչ չափը խախտեցիր՝ կարող ես մի ամբողջ երեկույթ փչացնել, բարեկամիդ դառնացնել: Հումորի զգացումը սանձարձակության, գռեհկության, կոպտության թշնամին է: Պետք է, ուրեմն, զգույշ լինել «հանաքը դանակ չդարձնելու» համար: Բայց թե մյուս կողմից էլ չպիտի այնքան զգույշ լինել, որ վախենաս սրամտելուց, կատակի տալուց, սրամիտ խոսք ասելուց կամ գրելուց: Ընդհակառակը՝ նամակ եք գրում թե շարադրություն, ջանք դրեք այնպես գրել, որ սրամիտ լինի, ժպիտ հարուցի, թե չէ՝ մեր նամակներն ու շարադրությունները երբեմն անժպիտ են, տխուր, անսրամիտ. մեր առօրյա խոսքը՝ նույնպես:

Ասում են, ֆրանսիական դպրոցներում հումորով պատասխանի համար մի նիշ ավելի են նշանակում (ճիշտ է, այնտեղ թվանշանի առավելագույնը ոչ թե 5-ն է, այլ 10-ը): Կարծում եմ, որ մեզանում ևս դա պետք է հաշվի առնըվի՝ իհարկե, ոչ անպայման թվանըշանը բարձրացնելու գնով:

Ամեն պարագայում պետք է լավ իմանալ՝ սրամտությունը հումորի ակտիվ ձևն է, մտածողության, ավելի ստույգ՝ լեզվամտածողության բարձրագույն ձևերից մեկը, ուստի և արժանի ամենայն խրախուսանքի:

Այստեղից չպիտի հետևեցնել, թե սրամտությունն ու հումորը նույն երևույթներն են: Խոսքը կարող է լինել և չափազանց սրամիտ, բայց բնավ էլ ոչ ծիծաղահարույց, ոչ հումորիստական:

Դրա մասին՝ հաջորդ անգամ:

## 1920—1980





*Սովետական Հայաստանի առաջին հիդրոէլեկտրակայանը կառուցվել է 1925 թ.*




● Բոլոր խոշոր գիշատիչներից ամենափոքր սիրտը առյուծինն է:

● Ձիերը կանգնած ավելի լավ են քնում, քան պառկած: Նրանք առանց պառկելու կարող են անցկացնել մի քանի ամիս:

● Իր սեփական քաշի համեմատությամբ ամենաուժեղ կենդանին բզեզ-ռնգեղջյուրն է: Կշռելով 14 գրամ, նա կարող է քաշել 1580 գրամ բեռ, որը 113 անգամ գերակշռում է իր սեփական քաշին: Եթե 60 կիլոգրամ քաշ ունեցող մարդը այդ բզեզի ուժը ունենար, ի վիճակի կլիներ 6,8 տոննա բեռ տանել:

● Ջայլամը ժամում կարող է զարգացնել մինչև 120 կիլոմետր արագություն: Աֆրիկյան ջայլամի ձվի երկարությունը հասնում է 30—35 սանտիմետրի, քաշը՝ մեկ կիլոգրամից ավելի է: Ջայլամի թաթի հարվածը ավելի ուժեղ է, քան ձիու սմբակինը:

Ջայլամները հարձակվում են միայն իրենցից ցածրահասակ հակառակորդների վրա:

● Մեկ կիլոգրամ մեղր հավաքելու համար մեղուն պետք է թռչի մոտ 300 հազար կիլոմետր և այցելի 19 միլիոն ծաղկի:

## Հեռու սարերում

*ՎԱՂԻՆԱԿ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ*

Աշուն է, աշուն,
Մեգ է, մառախուղ,
Տես, մերկացել են
Այգում ծառ ու ճյուղ:

Քամին սուլում է,
Թռչում թևարձակ,
Սրբում է, մաքրում
Փողոցներ ու բակ:

Տերևներն օդում
Թռչում են դես-դեն,
Հեռու սարերում
Ձմեռ է արդեն:

Եվ... ծաղիկներն էլ,
Երկնքում ծաղկած,
Ձյան փաթիլներն են,
Որ իջնում են ցած...

## ՉԱՐՈՒԹՅՈ՞ՒՆ

Գագիկը տանը չէր կարողացել լուծել հանձնարարված խնդիրը և դպրոցում մտածել էր՝ ումի՞ց արտագրել: Ահա դասարան մտավ Լուսինեն (դասարանի գերազանցիկը):

— Լուսինե՛, դու խնդիրը չե՞ս լուծել,—հարցնում է Գագիկը:

— Լուծել եմ, իսկ դո՞ւ...

— Չեմ կարողացել... Տո՛ւր արտագրեմ...

Լուսինեն հանդիմանում է նրան, սակայն տալիս է տետրը:

Գագիկն արտագրում է բոլոր գործողությունները: Երրորդ գործողու-

## Դու կգաս, դեռ կգաս...

ՎԵՆԵՐԱ ԱՆԴՐԵԱՍՅԱՆ

Շարունակ անձրևում ես լուռ,
Զանձրացնում երկինք ու երկիր...
Հանդարտի՛ր, արցունքդ կո՛ւլ տուր,
Եվ ապա մեզ համար երգիր:

Երգի՛ր, մեր աշո՛ւն սիրելի,
Մի՛ լինի հոգեմաշ տխուր,
Դու կգաս, դեռ կգաս էլի
Ծաղկունքով, գույներով քո բյուր...

Կգաս՝ թարմությամբ նոր աշնան,
Վաղորդյան ցողը վարսերին...
Գույնզգույն հագած մոր նման,
Բերք ու բարիքը ուսերին:




Արևադարձային բուսականության հրաշալիքներից է ամազոնյան վիկտորիան: Աճում է Ամազոնի և նրա վտակների գետախորշերում: Տերևները 2 մետըր լայնությամբ փռվում են ջրերի վրա: Տերևի վրա կարելի է փռել 75 կիլոգրամ ավազ և այն չի սուզվի: Տերևների արանքից ջրի երեսին երևում են 40 սանտիմետր տրամագիծ ունեցող ծաղիկներ: Ծաղկակոկոնը բացվում է երեկոյան և ունի մաքուր սպիտակ գույն: Հաջորդ առավոտյան ծաղիկը փակվում է, իսկ երեկոյան նորից բացվում, բայց արդեն ոչ թե սպիտակ, այլ մանուշակագույն: Այնուհետև ծաղիկը թառամում է: Հետաքրքրականն այն է, որ ծաղկի ջերմությունը շրջապատի ջերմությունից 10 աստիճան բարձր է լինում:

Վիկտորիան հաջողությամբ ծաղկում է Մոսկվայի և Լենինգրադի ջերմատներում:

### ՐՁԱԳԱՆՔՈՒՄ ԵՆ ՏՊԱԳՐՎԱԾԻՆ

## Թե...

թյան մեջ նա նկատում է Լուսինեի սխալը. այնտեղ որտեղ պետք է լիներ 25, Լուսինեն գրել էր 52: Գագիկն իր տետրում գրում է ճիշտը, իսկ Լուսինեին չի զգուշացնում, որ սխալ ունի: Հաջորդ օրը ուսուցչուհին ասում է.

— Ապրես, Գագի՛կ, ճիշտ ես լուծել, «հինգ»: Իսկ դու, Լուսինե՛, «չորս»՝ սխալ ունես...

Լուսինեն նայում է Գագիկին: Գագիկն հայացքը փախցնում է նրանից:

ՄԱՐԻՆԵ ԳԵՎՈՐԳՅԱՆ
Ք. Չարենցավան, 8-րդ դաս. աշ.



ՀՈՎՀԱՆՆԵՍ ՉԵՔԻՋՅԱՆ
ՍՍՀՄ ժողովրդական արտիստ

Սա փայլուն երգչախումբ է ամենաբարձր կուլտուրայով: Երգչախմբի գլխին կանգնած է մեծ երաժիշտն ու կոմպոզիտորը: Ամեն ինչում, ինչ նա է անում, զգացվում է նորարարություն... Հայաստանի պետական երգչախմբին կարելի է հյուրախաղերի ուղարկել ցանկացած երկիր: Նա հպարտորեն կտանի սովետական կուլտուրայի դրոշը:

ԱՐԱՄ ԽԱՉԱՏՐՅԱՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԱԿԱԴԵՄԻԱԿԱՆ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԸ

ՄԵՐ ՀՅՈՒՐԸ

«Ասում են, որ երգ սիրող մարդը չար չի լինում: Երեխաներին և պատանիներին պետք է երգել սովորեցնել, հատկապես խմբերգային երաժշտություն, որը միավորում է մարդկանց, դարձնում իրար սիրելի ու հարազատ: Երբ մարդիկ միասին կարողացան երգել, կկարողանան միասին գործել»...— ասում է Հայկական պետական սիմֆոնիկ երգչախմբի գեղարվեստական ղեկավար և գլխավոր դիրիժոր Հովհաննես Չեքիջյանը:

Հայկական երգչախմբային արվեստի պատմության մեջ քիչ չեն եղել կատարողական բարձր մակարդակի կոլեկտիվներ, սակայն միայն Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո, 1936 թվականին, Հայաստանն ունեցավ պրոֆեսիոնալ երգչախումբ, մի բան, որ Կոմիտասը երազել էր ամբողջ կյանքում: Երկար տարիներ երգչախմբի ղեկավարն էր տաղանդավոր խմբավար Արամ Տեր-Հովհաննիսյանը:

Երգչախումբը հատկապես մեծ հաջողությունների հասավ վերջին 20 տարիների ընթացքում, երբ նրա գեղարվեստական ղեկավարն ու գլխավոր դիրիժորը դարձավ այժմ արդեն Սովետական Միության ժողովրդական արտիստ, ՍՍՀՄ և Հայաստանի պետական մրցանակների դափնեկիր Հովհաննես Չեքիջյանը: Երգչախումբն արդեն համամիութենական ստուգատեսի դափնեկիր է, արժանացել է 1-ին կարգի դիպլոմի (1968 թ.), ստացել է ակադեմիական պատվավոր անվանում (1969 թ.), նրա կատարմամբ սրբոշ ձայնագրությունները Փարիզում արժանացել են միջազգային «Գրան պրի» մրցանակին (1970 թ.), արժանացել է հանրապետության վաստակավոր կոլեկտիվի կոչման (1975 թ.):

Երգչախումբը հանդես է գալիս տարբեր ժողովուրդների առաջ, 24 լեզուներով կատարում է համաշխարհային դասական և ժամանակակից հարյուրավոր ստեղծագործություններ: Սակայն երգչախմբի առաջնահերթ խնդիրն է հայ և այլազգի ժողովուրդներին բարձր կատարողականությամբ մատուցել մեր դարավոր, հայկական երգը:

«Պցանկանայի, — մեր ընթերցողներին է դիմում Հովհաննես Չեքիջյանը,— որ իմ պատանի բարեկամները մայրենի լեզվի հետ չմոռանան նաև մայրենի երգը, որը անբաժանելի են իրարից: Դարերի ընթացքում է հարստացել հայ երգի գանձարանը և այդ գանձարանի հարստության վրա հարկավոր է գուրգուրալ, պահպանել և փոխանցել հաջորդ սերունդներին»:

Լուսանկարը՝ ԱՎԵՏԻՔ ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆԻ

## ՀԻՆ ԵՐԵՎԱՆԸ



*Այստեղ այսօր Լենինի հրապարակն է*



*Հին Երևանի շուկան՝ Ղանթարը*



*Փողոց, որ ներկայիս Լենինի պողոտայի տեղում էր*

Գյուղում մենք ամենից շատ սիրում էինք թթի հասնելու ժամանակը:

Նանի բակում թթի ծառեր կային, որոնք շատ բարձր էին, բայց շատ սաղարթախիտ էին, ղեղնասպիտակ, խոշոր հյութեղ հատապտուղներով լի: Թթի հասնելու ժամանակ, նանն աշխատում էր բակից դուրս չգալ, աչքը միշտ այգու վրա պահել: Թթից նա եփում էր մեղրի նման ծորուն, շատ քաղցր բեքմեզ, որը բուժիչ հատկություն ուներ:

Մի անգամ Հրանտիկը վազելով եկավ և, հազիվ շունչը տեղը բերելով, վրա տվեց.

— Ծո՛ւտ արա, նանը ջրաղաց է գնացել:

— Հետո ի՞նչ:

— Ո՞նց թե ինչ: Բա թո՞ւթը:

Այլևս հարց տալու կարիք չկար. թթենու վրա հարձակվելու ուրիշ հնարավորություն չէր լինելու:

— Է՜յ, այդ ո՞ւր,— մեր ետևից կանչեց Մեծ-Մայրիկը:— Սպասեցե՛ք: Հրանտի՛կ ջան, արի՛ քեզ համար ձվածեղ անեմ, ո՞ւր ես վազում:

Նա համոզված էր, որ նանը եղբորս կիսաքաղց է պահում և հարմար առիթ էր փնտրում նրան կերակրելու:

— Չեմ ուզում: Կարևոր գործ ունենք, Մե՛ծ-Մայրիկ,— խույս տվեց

# Հարձակում թթենու վրա

ՎԻԿՏՈՐՅԱ ՎԱՐԴԱՆ

Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ



Հրանտիկը և իմ հետևից դուրս թռավ դռնակից: Մեր տատիկները, ծնողների նման, նույնպես թշնամական հարաբերությունների մեջ էին, բայց մենք Մեծ-Մայրիկին մասնակից չդարձրինք մեր պլաններին:

Ճանապարհին ես ու Հրանտիկը հանդիպեցինք Թութուշին, միշտ բոբիկ, նիհար, կլոր գլխով ու ցից-ցից ականջներով մեր ընկերոջը:

— Գալի՞ս ես մեզ հետ,— առանց կանգ առնելու ուսիս վրայով նետեցի ես:

— Ո՞ւր,— գոռաց նա:

— Թթի՛, նանը տանը չի,— իմ փոխարեն պատասխանեց եղբայրս:

Թութուշը անխոս հետևեց մեզ: Ջրբագետի գրեթե ամեն բակում թթի ծառ կա, բայց ո՞ւմ հայտնի չէ, որ ուրիշի ծառից պոկած պտուղը հարյուրապատիկ քաղցր է սեփականից...

Արդեն երկու շաբաթ էր ծառերը թափ չէինք տվել և հասած, քիշմիշի նման քաղցր պտուղները թափվում էին գետին, փոշու մեջ, հենց որ դիպչում էինք ծառաբնին: Պտուղներն այնքան

շատ էին, որ վերևի ճյուղերին բարձրանալու հարկ չկար: Մենք ագահորեն պոկում էինք ցածի ճյուղերից: Քաղցր, կպչուն հյութը հոսում էր ձեռքներիցս ու ծնոտներիցս: Մենք այնքան էինք տարվել մեր գործով, որ մոռացել էինք մեր անհեղ նանին և ուրախ, աղմկածայն խոսում էինք ու թութը լցնում բերաններս:

Նա բակում հայտնվեց բոլորովին անսպասելի: Առաջ Հրանտիկը տեսավ նրան:

— Նանը գալի՜ս է, գա՜ծ թռեք,— գոռաց նա: Բայց արդեն ուշ էր: Նանը մեզ նկատել էր: Բարձրաձայն անիծելով վազեց պատշգամբ, վերցրեց ամենաերկար փայտը և սկսեց պտտել ճյուղերի մեջ, ինչպես կրակախառնիչը՝ վառարանում: Թութուշը ոռնաց ցավից. փայտի հարվածները հասել էին խեղճի բոբիկ ոտքերին:

— Վա՜յ, ձեզ համա՞ր եմ պահել թութը: Վա՜յ, օ՜ձը կծի ձեզ: Ականջնե՜րդ խլանա: Գետի՜նը մտնեք, գետի՛նը: Վա՜յ...

Մի ակնթարթում մենք հայտնվեցինք ամենաբարձր ճյուղերի վրա, որոնք քիչ էր մնում կոտրվեին մեր ծանրությունից: Ոտքներս տակներս հավաքած, կպչիկների նման նստել ու նայում էինք ներքև, հետևելով նանի շարժումներին: Մեր ցնցումներից թութը կարկուտի նման թափվում էր, որ ավելի էր զայրացնում նանին: Անզոր զայրույթով նա փայտը խցկում էր ճյուղերի արանքները, թութը անձրևի պես թափվում էր նրա գլխին, ուսերին, մութ բծեր թողնելով գլխաշորի ու կանաչ արխալուղի վրա:

— Այս րոպեիս ցած իջեք, անպե՛տք տղաներ: Վա՜յ, ձեր մոր աչքերը քոռանան, հա՜: Տո՛ւնը փուլ գա գլխներիդ, հացը բկներիդ մնա, շո՛ւտ արեք, իջե՛ք: Չիբան դուրս գա քթներիդ:

— Տո՛ւն մտի, որ իջնենք,— վախվրխելով ասացի ես, կամովին ինձ վրա վերցնելով միջնորդի դերը:

— Վա՜յ, հողեմ գլուխներդ: Իջե՛ք:

— Գնա տուն, կիջնենք...— շարունակում էի ես միջնորդի իմ դերը:

— Վա-ա՜յ, քար կտրեք դուք, քա՞ր: Կարեմ ձեր անկուշտ բերանները: Ոչ մեծանաք, Զորագետի շները քրքրեն ձեզ, քրքրեն, օձերը կծեն ձեզ: Էշեր դառնաք, էշի երկար ականջներ ու պոչ դուրս գա վրաներդ...— շնչակտուր վրա էր տալիս անեծքները նա:

Եվ հայտնի չէ էլի ինչ անեծքներով նա կհարստացներ հայերենը, եթե Ավագ պապը նրա ծղրտոցի վրա դուրս չգար տանից:

— Ախչի Սոնա՛, ի՞նչ է պատահել: Էդ ի՞նչ ծղրտոց ես դրել: Ձայնդ երևի Վերի գյուղն է հասնում:

— Էլ ի՞նչ պիտի պատահի,— բարկացած պատասխանեց նանը:— Բավական է մի երկու ժամով ոտքս դուրս դնեմ տանից, էս շան կաթ կերածները բուսնում են էստեղ: Հիմա ինչի՞ց բեքմեզ էփեմ, հը՞:

— Է-է՛, Սոնա՛, հերիք է գոռգոռաս,— ասաց բարեհոգի Ավագ պապը, չորացած ծեր մատներով քաշելով սև համրիչի հատիկները:— Երեխեք են, էլի՜: Թող ուտեն... հե՛ն տես, ինչքան կա ծառերի վրա, բոլ-բոլ հերիք է բեքմեզի համար: Ավելի լավ է, դու տուն մտիր ու բեր ձեր մեծ մաղը,— շարունակեց նա, խորամանկ հայացք գցելով մեզ՝ ճյուղերի արանքներում թաքնվածներիս:— Մեր մաղը ծակծըկվել է, մեր պառավն էլ էսօր ուզում է հաց թխի:

— Լավ, Ավա՛գ, հիմա մաղը կբերեմ,— պատասխանեց նանը:— Ասում ես երեխեք են: Բա սրանք երեխե՞ք են· Ավազակներ են, ոչ թե երեխեք: Վա՛յ, թութը բկներիդ կանգնի,—մի անգամ էլ դեպի մեզ գոռաց ու բռունցքը թափ տվեց և մտավ տուն՝ մաղը բերելու:

— Դե շո՛ւտ, շա՜ն լակոտներ, ցա՛ծ իջեք ծառից,— կանչեց Ավագ պապը:





Լենինի պողոտան

Մենք արագ պոկվեցինք ծառից և ուզում էինք պոկ տալ, պապը կանգնեցրեց մեզ:

— Այդ ո՞ւր, սպասեցեք:

Մենք կանգ առանք երկու բակերը միացնող դռնակի մոտ: Խեղճ Թութուշը կռացած տրորում էր բոբիկ ոտքը, որին նանը խփել էր փայտով:

— Էդպես որ վախենում եք նրանից, ինչո՞ւ եք առանց հարցնելու ծառը բարձրացել, հը՞:

— Մեկ է, նանը չէր թողնելու...— ասաց Հրանտիկը:

— Փորձե՞լ եք, որ...

— Չէ...

— Բանն էլ էդ է, որ չէ: Իսկ հիմա...

Բայց այդ պահին մաղը ձեռքին տանից դուրս եկավ նանը: Մենք վախից քարացանք տեղներումս:

— Ըհը՛, ձեռքս ընկաք, անպիտաննե՛ր: Հիմա կիմանաք, թե ոնց...

— Նանի՜, նանի՜,— բղավեց Հրանտիկն ու... ձեռքերը բարձրացրեց վերև ոնց որ կինոյում:— Նանի՛, թո՛ղ տուր...

Ես ու Թութուշն էլ անմիջապես բարձրացրինք ձեռքներս, ախր շատ էինք շփոթված:

— Ի՞նչ, ի՞նչ,— նանը արագ-արագ թարթեց աչքերը:

— Նանի՛, թույլ տուր թութ ուտենք,— խոնարհաբար խնդրեցինք մենք:

— Ախ, այս անպիտանները դեռ թույլտվություն են խնդրում,— նորից սկսեց ճչալ նա: Բայց հետո, ըստ երևույթին, մեր խոսքերի իմաստը հասկացավ: Ուրեմն թույլտվություն են խնդրում, և նանն այնպիսի տեսք ընդունեց, կարծես միանգամից փոքր թողին:— Լավ, թույլ եմ տալիս, լափեցե՛ք,— թափ տվեց ձեռքը և դարձավ Ավագ պապին:

— Վերցրու մաղը,— ասաց նա միանգամայն հանդարտած ձայնով:



«Երևանցիների օրինական հպարտության առարկաներից մեկն է հռչակավոր Մատենադարանը. հին հայկական ձեռագրերի հրաշալի գանձարանը...»

Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎ

# ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

Հայ ժողովրդի հարուստ մշակույթի ստեղծարանների մեջ առանձին տեղ են գրավում «Մատենադարան»-ները: Այսպես ասելով հասկանում ենք հին մատյանների կամ գրքերի պահոցներ: Բայց, որովհետև ավելի հին են ձեռքով գրված գրքերը, քան տպագրված գըրքերը, այդ պատճառով էլ մատենադա-



# ԳԵՏԻ ԱՓԻՆ

ՍԻԼՎԱ ԴԱՎԻԹՅԱՆ

Կանգնել եմ ես գետի ափին,
Հովը ծաղկանց բույրն է բերում,
Լող է տալիս գետում արփին
Ու գնում է հեռո՜ւ, հեռո՜ւ:
Լեռը ասես պապս է բարի,
Իր չիբուխն է հանգիստ ծխում,
Բուրումնավետ հովը սարից,
Ասես ողջույն է ինձ հղում:
Իրիկունն է իջնում խաղաղ,
Ու անտառն է մտնում խոր քուն,
Լռում է և ծղրիդն ուրախ,
Միայն գետն է խշշում անքուն...

րան ասելով այժմ հասկանում ենք հին ձեռագրերի (ձեռքով գրված գրքերի) պահոցներ: Տպագիր գրքերի պահպանության պահոցները կոչվում են գրադարան: Հայաստանում այժմ կա մի խոշոր մատենադարան՝ Մեսրոպ Մաշտոցի անունով և մի խոշոր գրադարան՝ Ալեքսանդր Մյասնիկյանի անունով: Առաջինի հնությունը հասնում է մինչև 5-րդ դարը, որովհետև այդ ժամանակ են Մեսրոպ Մաշտոցի հանճարի ուժով ստեղծվել հայոց գրերը և առաջին ձեռագրերը, իսկ երկրորդի (գրադարանի) հնությունը հասնում է մինչև 1512 թվականը, երբ Հակոբ Մեղապարտի ջանքերով հիմնադրվեց հայերեն գրքերի տպագրությունը:

Ինչպես հիմա, այնպես էլ անցյալում հայտնի են եղել մի շարք մատենադարաններ ու գրադարաններ՝ հաճախ միասին, միևնույն շենքի մեջ: Այժմ հայերեն ձեռագրերի մատենադարան կա, Երևանից բացի, Վենետիկում, Վիեննայում, Երուսաղեմում և ուրիշ վայրերում: Անցյալում խոշոր մատենադարաններ են եղել Հաղպատ-Սանահինում, Տաթևում, Սևանում, Աղթամարում, Կոստանդնուպոլսում, Թիֆլիսում, Մոսկվայում և այլ տեղերում: Այսպիսի ցրվածության պատճառը եղել է մի կողմից՝ դեռևս ձեռագրերը մի տեղ հավաքելու միջոցառումի բացակայությունը, մյուս կողմից՝ հայ ժողովրդի հալածական ու թափառական վիճակը:

Անցյալի հին մատենադարանների ձեռագրերի մեծ մասն այժմ հավաքված է Մաշտոցի անվան Մատենադարանում (Երևան): Այստեղ նրանց թիվը հասնում է մոտավորապես 11 հազար հատորի, չհաշված ուրիշ ժողովուրդների լեզուներով (պարսկերեն, արաբերեն, հնդկերեն, սլավոներեն, ասորերեն, վրացերեն և այլն) գրված բազմաթիվ հին ձեռագրերը: Դրսում (ուրիշ մատենադարաններում) գտնվող հա-

## ԾՆՆԴՅԱՆ 90-ԱՄՅԱԿԸ



ՀՈ ՇԻ ՄԻՆ

Այս տարի սոցիալիստական Վիետնամը և երկրագնդի բոլոր առաջադեմ մարդիկ նշում են ազատագրված Վիետնամի առաջին պրեզիդենտ, բոցաշունչ հեղափոխական Հո Շի Մինի ծննդյան 90-ամյակը:

Հո Շի Մինը (սա նրա հեղափոխական անունն է) ծնվել է 1890 թվականի մայիսի 19-ին, գյուղական ուսուցչի ընտանիքում: Հենց այդ օրերին նրա հայրը հաջող քննություն տվեց գիտական աստիճան ստանալու համար: Հավանորեն ծնողները դրա համար էլ նրա անունը Նգուեն Տաթ Թհան դրեցին (Նգուեն նշանակում է հաղթող): Սակայն շուտով Նգուենի հորը, գաղութային կարգերին չենթարկվելու համար, ֆրանսիական իշխանությունները արգելեցին դասավանդել: Հետապնդում-

յերեն ձեռագրերի ընդհանուր քանակն ավելի մեծ է՝ շուրջ 15 հազար հատոր: Այսպիսով, այժմ աշխարհում կա մոտ 25 հազար հայերեն ձեռագիր:

Մեր նախնիները շատ են սիրել իրենց ստեղծած ձեռագրերը և ոչինչ չեն խնայել նրանց պահպանության համար: Սակայն բնական պատահարները, անբարենպաստ պայմանները, օտար արշավանքները, ինչպես նաև ինքը՝ ժամանակը մեծ ավերածություններ են կատարել: Միայն 1170 թվականին, Սյունիքում թշնամին ոչնչացրել է 10 հազար ընտիր ձեռագիր: Մասնագետները գտնում են, որ մեզ հասած 25 հազար հատորները մի չընչին մասն են այն մեծ հարստության, որ ստեղծել են մեր գրասեր նախորդները: Փրկված և մեզ հասած ձեռագրերից շատերը՝ վնասված, մաշված և ծերացած են: Այդ պատճառով այժմ դրանք հատուկ հոգատարությամբ են պահպանվում, բուժվում և նորոգվում:

Ձեռագրերը, սակայն, թե՛ մեր և թե՛ ուրիշ մատենադարաններում միմիայն թանգարանային արժեքներ չեն. դրանք միաժամանակ անգնահատելի սկզբնաղբյուրներ են: Հայերեն ձեռագրերը հարուստ նյութ են ամբարում հայ ժողովրդի պատմության, մանրանկարչության, բանաստեղծության, աշխարհագրության, տիեզերագիտության, մաթեմատիկայի, քիմիայի, մանկավարժության, բերականագիտության, փիլիսոփայության և գիտության ու մշակույթի շատ ուրիշ բնագավառների վերաբերյալ: Այդտեղ մեծարժեք տեղեկություններ կան նաև մյուս ժողովուրդների մասին: Առանձին տեղ ու նշանակություն ունեն այդ ժողովուրդների գրականությունից կատարված հին թարգմանությունները:



ները չընկճեցին ընտանիքի ազատաբաղձ ոգին: Նգուենի եղբայրն ու քույրը հեղափոխական գործունեության համար երկար տարիներ տառապեցին բանտում: Ինքը՝ Նգուենը պայքարի մեջ մտավ 15 տարեկանից:

Պատանին շատ էր ուզում աշխարհն իր աչքերով տեսնել, իմանալ, թե ինչպես են ապրում և պայքարում հասարակ մարդիկ: Նա ֆրանսիական մի շոգենավի վրա նավաստի վարձվեց: Սկսվեցին թափառումների տարիները: Եղավ Ամերիկայում, Պորտուգալիայում, Իսպանիայում, Ալժիրում և Ֆրանսիայում, երկար ապրեց Լոնդոնում և Փարիզում: Հենց այստեղ, կոմունարների այս քաղաքում հասունացավ նա որպես հեղափոխական և գրող: Նգուենը մասնակցեց Ֆրանսիայի կոմկուսի ընտեղծմանը, գրեց «Ֆրանսիական գաղութարարության դատը» գիրքը, կարդում էր Մարքսին, հանդիպում էր հայտնի հեղափոխականների հետ:

Հո Շի Մինը խանդավառված ողջունեց Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը: Սովետական իշխանության դեկրետներում, Լենինյան ճառերում նա տեսնում էր գաղութատիրությունից ժողովուրդների ազատագրման, իր երկրի ազատագրման իրական ուղին:

1923 թ. հունիսյան մի օր «Կարլ Լիբկնեխտ» սովետական շոգենավից նա պետրոգրադյան նավահանգիստ իջավ:

— Ինչ նպատակով եք եկել Ռուսաստան,—



Մ. Մաշտոցի հուշարձանը
Քանդակագործ՝ Ղ. ՋՈՒԲԱՐՅԱՆ



Հին հայկական մանրանկար

Իր բովանդակած հարստություններին շնորհիվ Մաշտոցի անվան Մատենադարանն այսօր արժանանում է սովետական և արտասահմանյան գիտնականների ուշադրությանը, ինչպես նաև աշխարհի տարբեր կողմերից եկած այցելուների հիացմունքին ու բարձր գնահատանքին:

*ԱՍԱՏՈՒՐ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ*

---

հարցրեց սահմանապահը:

— Առաջին հերթին Լենինին կուզենայի տեսնել...

Բայց Նգուենին՝ չհաջողվեց Լենինի հետ տեսնվել: Մի քանի ամիս անց կսկիծով իմացավ հեղափոխության առաջնորդի մահը:

Նգուենը երկրորդ անգամ Մոսկվա եկավ 1934 թվականին և մնաց չորս տարի: Սովորում էր լենինյան միջազգային դպրոցում և դասավանդում Ազգային և գաղութային պրոբլեմների գիտահետազոտական ինստիտուտում:

1941 թվականին Նըգուենը նորից հայրենիքում էր: Կաոբանգ լեռնային գավառից ամբողջ Վիետնամով մեկ հնչում էին գաղութատիրության դեմ ապստամբելու նրա կոչերը: Կոչերը ստորագրվում էին՝ Հո Շի Մին՝ «Իմաստնացած»:

Այդ օրերին նրա տունը Պուկբո կոչվող քարանձավն էր, սեղանը՝ հսկա մի քար: Քարանձավից ոչ շատ հեռու մի գետակ էր հոսում: Նայելով նրա հորդուն ջրերին, Հո Շի Մինը երազում էր այն օրը, երբ Վիետնամի հեղափոխական բոլոր ուժերը ի մի կհավաքվեն և արընթաց գետի ջրերի պես մոլեգնորեն կիջնեն ստրկացնողների գլխին...

Երկար և արյունահեղ պայքարից հետո վիետնամական ժողովուրդը առաջին հաղթանակը տարավ՝ վտարեց գաղութատերերին երկրի Հյուսիսից և 1954 թվականին Վիետնամը դեմոկրատական հանրապետություն հռչակեց: Բայց ստրկացված Հարավի մասին միտքը մշտա-

ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ

# ՀԱՅՐԵՆԻՔ

Արքան ուներ հրաշք ձի,
Նախանձելի բան,
Արագավազ, գեղեցիկ,
Գանձ էր իսկական:

Մեկ ուրիշի ամրոցում
Հրաշք մի հավք կար,
Ոսկե ձվեր էր ածում
Իր տիրոջ համար:

Մի օր արքան արքային
Ասաց՝ բարեկամ,
Տուր ինձ թռչունդ հրաշք,
Հրաշք ձիս կտամ:

Շատ էլ ասաց, բայց չէ՞ որ
Ուրիշ բան էր ձին,
Նրանք ձի ու թևավոր
Մի կերպ փոխեցին:

Նոր տիրոջ մոտ չէր ածում
Թռչունը ոսկի,
Սովորական ձու էր ձուն,
Փայլ չուներ իսկի:

Իսկ ձին իր նոր տիրոջ տակ
Չէր ծփում, խաղում:
Էլ ի՞նչ քամի-հովատակ,
Ծոնվում էր, կաղում:

պես անհանգստացնում էր Հո Շի Մինին և նրա զինակիցներին: «Վիետնամը մեկ երկիր է, վիետնամցիները՝ մեկ ժողովուրդ: Գետերը կարող են չորանալ, լեռները՝ փլվել, բայց այս ճշմարտությունը չի փոխվի երբեք»,— այսպես էր ասում Հո Շի Մինը դեռևս 1946 թվականին:

Հարավային Վիետնամի հայրենասերները Ազատագրության ազգային ճակատ ստեղծեցին, որը գլխավորեց երկրի Հարավի ազատության և անկախության համար մղվող զինված պայքարը: Սայգոնում իրենց մարիոնետներին փրկելու համար Միացյալ Նահանգները իրենց զորքը մտցրին Հարավային Վիետնամ և օդային պատերազմ սկսեցին մըղել Վիետնամի Դեմոկըրատական Հանրապետության դեմ: Ժողովուրդը նորից զենք վերցրեց...

Հո Շի Մինին չվիճակվեց ամբողջ երկիրը ագրեսորներից և նրանց մարիոնետներից ազատագրված տեսնել: Բայց այդ հաղթական օրվան էր ձգտում նա ամբողջ կյանքում և հավատում էր դրան մինչև իր կյանքի վերջին օրը: Ահա ինչու Վիետնամի աշխատավորները որոշեցին ազատագրված Հարավի մայրաքաղաք Սայգոնը վերակոչել Հո Շի Մին

— Խաբեց,—մռաց այս արքան,
Սա յաբու է լավ:
— Խաբեց,— մռռաց այն արքան,
Սա հավք չէ, այլ հավ:

Բայց երբ նրանք փոշմանած
Ձի, հավք փոխեցին,
Կրկին ոսկի հավքն ածեց,
Կրկին սուրաց ձին:

Քանի՛-քանի ձիեր են,
Ծռնվել, կաղացել,
Քանի՛-քանի արծիվներ
Հավեր են դարձել:

Հավքը ոսկի ձու կածի
Իր հայրենիքում,
Կպանա հրաշք ձին
Իր հայրենիքում:

անունով: Նրա զբոսավայրերում ո՛չ ամերիկյան ծովային հետևակների, ո՛չ էլ զուգված-զարդարված հարուստների այլևս չես հանդիպի: Հիմա կտեսնես կարմիր վզկապավոր տղա-աղջիկ՝ հոշիմինյան պիոներների: Ականավոր հեղափոխականին կենդանի հուշարձան դարձավ Վիետնամի Միացյալ Սոցիալիստական Հանրապետությունը:

Պ. ԳՐԻԳՈՐԵՎ



Անի հյուրանոցը



Ալ. Սպենդիարյանի անվան Լենինի շքանշանակիր օպերայի և բալետի պետական ակադեմիական թատրոնը

Կենտրոնական ծածկած շուկան





# ՊԻՈՆԵՐ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱ-ԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

## № 11 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1980



Շապիկի առաջին էջին՝ Սասունցի Դավթի արձանը
Լուսանկարը՝ ԴԱՎԻԹ ՆԵՐՍԻՍՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆԶՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՍՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՍՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր)։

Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՎՖ 09052։ Պատվեր 1615։ Տպաքանակ 51044։ Տպ. 3 մամ.։ Թուղթ՝ $70 \times 100^{1}/_{16}$։ Հանձնված է արտադրության 2/X 1980 թ.։ Ստորագրված է տպագրության 20/XI 1980 թ.։

ՀՍՍՀ հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91։




# ԳԱՂՏՆԱԳԻՐ՝ «ՀԱՅԱՍՏԱՆ»

Գաղտնագրի լուծման համար հարկավոր է գտնել նշված հարցերի պատասխանները և տառերը տեղադրել համարներով նշված համապատասխան վանդակներում: Անհրաժեշտ պատասխանները գտնելուց և տառերը վանդակներում ճիշտ տեղադրելուց հետո կկարդաք՝ ամերիկացի նշանավոր նկարչի մտքերը Հայաստանի մասին, իսկ նրա անուն-ազգանունը կկարդաք գաղտնագրի վերջին հարցի պատասխանը գտնելուց հետո:

1. Գծագրի կենտրոնում տեղադրըված է մեր ժամանակի նշանավոր հայ նկարիչ Մ. Սարյանի ստեղծագործություններից մեկը, ինչպե՞ս է կոչվում այն:

2. Հայ նշանվոր ճարտարապետ, Երևանի հատակագծի հեղինակը:

3. Քաղաք, որտեղ 1920 թ. նոյեմբերի 29-ին մուտք գործեց 11-րդ Կարմիր բանակը, և Հայաստանում հաստատվեց սովետական իշխանություն:

4. Հայ առաջին տպագրիչը:

5. Միջնադարի հայ նշանավոր բանաստեղծ:

6. 1920 թ. Մայիսյան ապստամբության ղեկավարներից:

7. «Ես սիրում եմ քեզ, իմ հայ ժողովուրդ,
Քեզ, որ լեռներից այս բարձրիկ ու լուրթ
Տեսար հյուսիսի ցոլանքը պայծառ
Ու նրա ազնիվ զինվորը դարձար...»

Սովետահայ նշանավոր ո՞ր բանաստեղծի գրչին են պատկանում այս չափածո տողերը:

8. Հայազգի սովետական նշանավոր կին գրող-հրապարակախոս:

9. Ռոմանոս Մելիքյանի երգերից:

10. Պիոներական հանգստավայր Կիրովականում:

11. Հայ մեծանուն բանաստեղծներից ո՞րն է այս քառատողի հեղինակը՝

«Վառ ու հզոր քո ապագան
Կայծակում է իմ դեմ,
Դու՝ հավերժող իմ Հայաստան,
Անուն քաղցր ու վսեմ»:

12. Ամերիկացի նշանավոր նկարիչ, հասարակական գործիչ, ժողովուրդների միջև խաղաղության ամրապնդման համար միջազգային լենինյան մրցանակի դափնեկիր, որը եղել է Սովետական Հայաստանում:

Կազմեց՝ ՑՈԼԱԿ ՂԱՆԴԻԼՅԱՆԸ

